# ՄԻ ՊՏՈՅՏ

## ՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ,
## ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆՆԵՐԻ ԵՒ ԺՈՂՈՎՐԴԻ ՇՈՒՐՋԸ



Ա. ԳՐՔՈՅԿ



**Ե. ՔՐՋԱՆ**



*[illegible]*




ՏՓԽԻՍ
1905
Տպարան [illegible] Վարդանեանցի.

Тип. М. Вартанянца, Гановск. ул. д. № 3.


UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

# ՄԻ ՊՏՈՅՏ

## ՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ, ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆՆԵՐԻ ԵՒ ԺՈՂՈՎՐԴԻ ՇՈՒՐՋԸ.

Ա. ԳՐՔՈՅԿ.

**Ա. ՇՐՋԱՆ.**

*Արսէն աւագ-քահանայ Բագրատունի։*



**ՏՓԽԻՍ.**
1905
**Տպարան Մովսէս Վարդանեանցի.**
Тип. М. Вартаняница, Гановск. ул. д. № 3.

GRAD

# ՊԱՇՏԵԼԻ ԱՆՈՒԱՆ

Սիրեցեալ Հայրիկ-Հայրապետին Ազգիս

Տեառն Տեառն ՄԿՐՏՉԻ Ա-ոյ

ԽՈՆԱՐՀԱԳՈՒՆՉ ՆՈՒԷՐ

Նուաստ երկասէրից։



Ի Կողմանէ Նորին Ս. Օծութեան Վեհափառ Հայրապետի ազգիս Տ. Տ. Մկրտչի՝ առ տպագրութիւն սորին չիք արգելք։ Ի 21 Ապրիլի 1900 Տփխիս։

*Դիւանապետ Կորիւն Վարդապետ։*



*Թող լոէ կեղծը, փարիսեցույը,*
*Կամ որոց ԱՀ է լուծանք—գըոյցը.*
*Բայց ես յանդիման Գողգոթի խաչին՝*
*Ուխտեցի լինել խաչակից Փրկչին։*

*Ընծայացի։*

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

*Աշխարհը մի դաշտ է, կեանքը՝ մի կարիք. այդ դաշտի ու կարիքի մէջ ամեն ոք ձգում է իւր աշխատանքի ակօսը. այն տեղ ամեն ոք թափում է իւր ճիգն ու քրտինքը. Չէ՞ որ ես էլ նոյն աշխարհի, նոյն կարիքի մի վտիտ զաւակ, մի տկար մշակ եմ. չվստահանում և ես ձգել այնտեղ և իմ աշխատանքի հատիկը, ապագայում բեղմնաւորելու ցանկալի յուսով։*

*Թէպէտ ես էլ չեմ գլացել իմ պարտականութեանց մէջ և ըստ չափու մասնակցել եմ գործող մշակներին, սակայն իմ գործը եղած է կեանքի առօրեայ երևոյթների հետ ծանօթանալու նկատմամբ. և թէև այս փոքրիկ աշխատութիւնը 80-ական թուա-*

*կանի գործ է, որպէս յայտնի է երբեմն «Մեղու»-ի աշխատակից, այժմ Գեղամեան Արժ. Եղիշէ քահանային որ 'ի Բագու. բայց չվստահացայ հրատարակել այն ժամանակները, դեռ վաղաժամ համարելով. իսկ այժմ երեսնամեայ ուսուցչական և քահանայական շրջան բոլորելուց յետոյ միայն եմ վստահանում հրատարակել, և այն, այնպիսի հանգամանքներից դրդուած՝ որոնցով վերջին ժամանակները զգալապէս շօշափուեցաւ հայ քահանայի անունն ու վարկը թէ պարբերական թերթերի էջերում և թէ գրէթէ ամենուրէք։ Թէ որքան ճիշտ և կամ անճիշտ էին հայ հոգեորականութեան հասցէին ուղղած լուրերը, գրոյցներն ու յօդուածները՝ այդ հետղհետէ կտեսնուի։*

*Արդ՝ ով կարողէ ուրանալ՝ թէ երբ մի անհատ կամենում է հասարակաց աշխատանքին գործակցել, նրան անհրաժեշտ է ծանօթութիւն ունենալ նոյն աշխատանքի և աշխատողների հետ. և որովհետև այդ աշխատանքի ծաւալը մեծ է, ես անկարող եմ նոյն ծաւալի տարածութիւնը լիով չափ նշմարելու. և որովհետև աշխատողներն ևս շատ են ու բազմադիմի, անհնարինէ ինձ նոցանից իւրաքանչիւրի հետ մանրապատում ծանօթութիւն ունենալ. սակայն և այնպէս ես չեմ լքանում թօրել աշխատանքի դաշտումը իմ ճիգն ու քրտինքը. յուսալով որ իմ գըծած շրջանակի մէջ դուրս սպրդած պակասը կլրացնէ մի այլ ոք աւելի հմուտ քան զիս։*

*Այս այսպէս լինելուց յետոյ, ես չեմ ուրանում և այն ճշմարտութիւնը, թէ ամենայն գործատէր պէտքէ իւր գործին ծանօթութիւն ունենայ և ամե-*

նայն մի գործող, նախ քան գործ սկսելը, պէտք է ձեռք բերէ նոյն գործին վերաբերեալ հարկաւոր տեղեկութիւնները. և նորանց առաջնորդութեամբ այնպիսի գործ պատրաստէ, որի հիմքը դրուած լինի Ս. Աւետարանի քարոզած վիմի վերայ. որին ոչ հողմերն և ոչ անձրևներն են կարող տապալել, և որ գլխաւորն է, բարոյական տեսակէտից նայելով՝ գործը ինքնին սուրբ է, ուրեմն և գործատէրը պիտի լինի սուրբ, թէ մտադրեալ նպատակով և թէ աշխատութեանց տեսակների մէջ։ Հետևաբար ուրեմն մի որևէ հասարակական գործող անհատի գուծունէութեան առաջին շրջանը պիտի լինի նոյն հասարակութեան կեանքի անցեալ և ներկայ վիճակի հիմնաւոր ծանօթութիւնը. երկրորդ՝ նոյն հասարակութեան կեանքի սկզբնական և առաջնորդող հանգամանքների հետ մանրամասն տեղեկութիւն ունենալը. և երրորդ՝ նոյն կեանքը և վիճակը բարւոքելու ղօրեղ, խելացի և համապատասխան միջոցներ ձեռք բերելը։

Այս և այսպիսի պայմաններով հասարակական գործիչը կարող է իրաւամբ կատարել իւր պարտքը. և իւր գործունէութեան ձևն ու եղանակը համապատասխան տանելով նոյն հասարակութեան արդի, յատուկ, սեպհական և մինչև անգամ ժառանգական սովորութեանց ու կեանքի հետ՝ կարող է արդարև օգտակար լինել իւր ծառայութեամբը։

Մեր ազգային հասարակական գործունէութեան հանդիսում մեծ ծառայութիւն է արել Լրագրութիւնը. նա զբաղուել է միշտ ժողովրդի տնտեսական, քաղաքացիական, պատմական, կուլտուրային... և այլն

և այլն, վիճակը բարելաւելու պատմական և առօրեայ խնդիրներ շօշափելով. զբաղուել է նաև հետեւեալ նուիրական և օրուայ խնդիրներով այն է՝ Եկեղեցի և Ուսումնարան, Կրօն և Լեզու, Հոգևորականութիւն և Ժողովուրդ։ Մի՛թէ կարելի է ուրանալ— որ եթէ այսօր յառաջադիմութեան քայլ է նկատւում մեր մէջ, գիտակցօրէն ինքնաճանաչման առմամբ՝ այդ լրագրութեան շնորհն է մեծ մասամբ. և գրի ու խօսքի՝ ընդհանրապէս. սակայն և այնպէս պէտքէ խոստովանել և այն՝ որ լրագրութեան մէջ ուսումնարանների և եկեղեցւոյ, ժողովրդի և հոգևորականների վերաբերութեամբ եղած յօդուածները կամ յայտնուած մտքերն եղած են կա՛մ պատահաբար, կամ միակողմանի և թոյլ և շատ սակաւ՝ պարբերաբար և բազմակողմանի. այդ իսկ պատճառով իրական օգուտը չէ մարմնացել, մի որոշ ուղղութիւն շօշափող խնդիրների նկատմամբ. ուստի և չէ պըտղաբերել այն չափով՝ որ չափով պէտք էր սպասել։ Այս համեստ գործը, մի տեսակ ակնարկ է մամուլի, դէպի հոգևորականները, բռնած դիրքի՝ և ժողովրդի ու քահանայի մէջ տիրող տննախանձելի յարաբերութիւնների, առմամբ, որը երկու շրջանի է բաժանւում մի՛ վերնագրով—որ գրքիս մակագիրն է կազմում. բայց երկու գրքոյկի բաժանուած—Ա. Շըրջան. Բ. Շրջան վերտառութեամբ։ Եւ այս ինչո՞ւ. որովհետև այս Ա. Շրջանը մի դրական առաջարկ է անում նոյն յարաբերութիւնները բարելաւելու միջոցների ձեռնարկութեամբ և Քահանայական Ռոճկի սահմանադրութեամբ։ Իսկ Բ. Շրջանը քննական պըտոյտով է ընթանում խնդիրների շուրջը, որոնք վե-

րաբերում են հաւատի գործին և ժողովրդի ու հոգևորականների լարուած յարաբերութիւններին։ Ես, ստիպուած անհերքելի հանգամանքներից, հազիւ միջոց ունեցայ ի լոյս հանել Ա. Շրջանը միայն, Բ. Շրջանի հրատարակութիւնը թողլով բարեյաջող հանգամանքներին։ Այսպէս ուրեմն Ա. Շրջանում խօսւում է քահանայի և ժողովրդի յարաբերութիւնների և նոյն յարաբերութիւնները բարելաւելու միջոցների վերայ. Բ. Շրջանում մի հարևանցի ակնարկ և տեսութիւն է ձգւում հայ պարբերական հրատարակութեանց մէջ յայտնուած Հոգևորականութեան և Ժողովրդի, Եկեղեցւոյ և Ուսումնարանների, Կրօնի և Ազգութեան և Քրիստոնէական ուսուցման կամ Աւետարանական ճշմարտութեան վերաբերեալ կարծիքների ու գաղափարների վերայ. ուստի և կրում է «Մի պտոյտ Հայ Մամուլի եւ Հոգեւորականների ու Ժողովրդի շուրջը» վերնագիրը։

Ցանկալի նպատակիս հասած կլինէի՝ եթէ ա. որ հրապարակական անաչառ քննութիւնը սորա պակասը լրացնէր. և բ. որ սորա մէջ յիշուած կարևոր առաջարկները իրագործուէին։

Արսէն աւ. քահ. Բագրատունի։



# Ա. ՇՐՋԱՆ.

## Ա. Բաժին.

### Քահանայի և ժողովրդի յարաբերութիւնները և նոյն յարաբերութեանց բարւոքման միջոցները։

### I.

*Ռոճիկ տալու դէմ առարկողների փաստաբանութիւնը.*

Ես կարծեմ որ կլինեն ոմանք, որոնք հոգևորականաց դլութեան նիւթական ապահովութիւնը կանոնաւոր ռոճկի միջոցաւ աւելորդ կհամարեն, հիմնուելով հոգևորականաց իսկ հոգևորապէս կենցաղավարութիւն պարտականութեան ու կանոնների և առաքելական կամ նախնական ժամանակների սովորութեանց վերայ։

«Հոգևորականաց իսկ հոգևորապէս կենցաղավարութեան պարտականութեան ու կանոնների վերայ հիմնուելով» ասողների միտքն էլ ունի իւր նշանակութիւնը, թէև միակողմանի. նոցա կարծիքն է—առաջին՝ որ հոգևորականը, այն է քահանան,

պէտք է լինի սակաւապէտ. իբրև օրինակ իւր ժողովրդի. նա իւր թէ՛ նիւթական և թէ բարոյական կենցաղով մի պարզ հայելի պիտի լինի իւր հովուութեան յանձնուած հօտին, որը այդ հայելւոյ մէջ պէտք է տեսնէ իւր կեանքը և կենցաղավարական ձևը. չափաւոր կենցաղ վարող քահանային անգադար նայելով ժողովուրդը՝ ինքն ևս կաշխատէ նմանուել իւր հոգևոր հօրը. և ուրեմն չափաւոր կենցաղավարութիւնից հետևաբար յառաջ կգայ և նիւթական ապահովութիւնը. երկրորդ՝ որ հոգևորականը, այն է քահանան, ունենալով իւր կանոնաւոր ռոճիկը, զանցառու կլինի իւր հոգևոր պարտականութեանց մէջ դէպի իւր ծուխը, նա պարտական է երթևեկել իւր ժողովրդոց տները թէ՛ օրինակատարութեանց ժամանակ և թէ արտաքոյ դորան, այն ինչ կանոնաւոր ռոճիկը կծուլացնէ քահանային իւր պարտակատարութեանց գործում. սորա հետևութիւննէ, որ քահանային ձգող մագնիսը նիւթական ակնկալութիւնն է և ոչ բարոյական պարտիքը. երրորդ՝ որ հոգևորականը, այն է քահանան, զրկուած պիտի լինի, պիտի ընտելանայ զրկանաց և կարօտութեան վիճակին, կլինի՝ լաւ. չի լինի՝ համբերութիւն. իսկ ժողովուրդը ինքը պիտի հոգայ իւր քահանայի մարմնաւոր ապրուստը, որովհետև քահանան էլ նորա հոգևոր սնունդի համար է տքնում և աշխատում. սա ըստ առաքելոյն՝ թէ «Եթէ մեք 'ի ձեզ զհոգևորն սերմանեցաք, մեծ ի՞նչ իցէ, եթէ ի ձէնջ զմարմնաւորն հնձեսցուք». Պօղոս առ Կորնթացիս։

Ահա երեք կէտեր, գուցէ և շատ կան, որոնց հիման վերայ տակաւին աւելորդ կարող են համա-

րել ոմանք քահանայի կանոնաւոր ռոճկի սահմանադրութիւնը։

---

## II.

Հարևանցի ակնարկ այդ փաստաբանեալ առարկութեանց մասին.

Հարևանցի մի ակնարկ ձգենք այդ կէտերի ճիշտ և անճիշտ կողմերի վերայ։

Առաջին կէտը, թէ հոգևորականը սակաւապէտ պիտի լինի, այդ շատ համակրելի է. բայց թէ ռոճիկը կխանգարէ՞ արդեօք քահանային սակաւապէտ կամ չափաւոր լինելու մէջ, ես կարծեմ հիմնական չէ այդ կարծիքը. մի՞թէ չափաւորութիւնը արդիւնք է անկանոն ռոճկի, իսկ կանոնաւոր ռոճիկը շռայլութիւն է յառաջ բերում. սա ի՜նչ տրամախոհութիւն է։ Քահանան ունենալով կանոնաւոր ռոճիկ, դարձեալ կարող է չափաւոր լինել, որպէս և չունենալով այն. չափաւորութիւնը կախուած է նորա կանոնաւոր և հաշուապահ կենցաղավարութիւնից և ոչ բնաւ անկանոն ռոճկից. անկանոն տուրքը, պատահական արդիւնքը՝ ընդհակառակը անհաշիւ կենցաղավարութիւն և անկանոնութիւն է յառաջ բերում. որովհետև այսօր շատ կընկնի ձեռքը՝ շատ կծախսէ, վաղը ոչինչ՝ փոխարինութիւն պիտի անէ, որից և յառաջ կուգայ անկանոն և անհաշիւ կեանք, այն է շռայլութիւն և չքաւորութիւն. սակաւապէտ և չափաւոր լինելուն՝ կանոնաւոր ռոճիկը աւելի ևս կնպաստէ, որովհետև

միանգամ ընդ միշտ հաշուելով իւր ռոճկի ոըքանու-թիւնը, ըստ այնմ և կըտրնօրինէ իւր գերդաստանական ծախքը. ռոճկի գումարի համեմատ կկազմէ իւր ընտանեկան կամ արտաքոյ կարգի ծախուց ցուցակը. և այդ ծրագրած շրջանակից ոտքը դուրս չի դնիլ, որից և յառաջ կուգայ չափաւոր և կանոնաւոր կենցաղավարութիւն։ Բայց այժմ ի՞նչ պիտի անէ քահանան. այսօր կայ՝ լաւ. կտնօրինէ իւր ծախքը, որքան ներում է գումարը. այն վերջացաւ. այժմ պիտի սպասի՝ թէ ե՞րբ օրէնք կպատահի, որ իւր պարտքերը հատուցանէ և գերդաստանական ծախուց պակասորդը լրացնէ. ուրեմն եթէ քահանան չգիտէ իւր մուտքի հաշիւը, ի՞նչպէս կազմէ նա իւր ծախուց նախահաշիւը. դորանից ի՞նչ կարող է յառաջ գալ՝ չափաւորութի՞ւն արդեօք, թէ խանգարեալ, խառն ու շըփոթ կենցաղավարութիւն. որպիսին և վարում է քահանան մինչև այսօր։

Երկրորդ կէտը, թէ հոգևորականի կանոնաւոր ռոճիկը պատճառ կտայ նոյն հոգևորականին զանցառու լինել իւր պարտականութեանց մէջ և ծուլանալ իւր գործում՝ դարձեալ հիմնական չէ. ե՞րբ կարող է գործակատարը բարեխղճաբար և ջերմեռանդութեամբ կատարել իւր գործը. մի՞թէ այն ժամանակ՝ երբ անկանոն ռոճիկ ունենայ. ո՛չ երբէք. ե՞րբ աւելի պարզերես կմտնէ քահանան իւր ժողովրդի տունը, մի՞թէ այն ժամանակ՝ երբ գերդաստանական ծախքը առաջին՝ և սակայն լրացնելու գահեկան մի անգամ չունի. և այժմ ինչպէս ազազուն դաշտերը կենսատու անձրևին են սպասում, որ շունչ առնեն.

ուզես չուզես՝ աչքդ տնկում ես Թաղման ու Պսակին. և ննջեցեալ պատահած ժամանակն էլ, ուրախ ուրախ վազում ես ննջեցելոյ տունը՝ բայց ցաւալի դէմքով, կոկորդիլոսի արտասուք թափելով ու զանազան 'ի խորոց սրտի հառաչքներ հանելով՝ հանգիպում ես ննջեցելոյ սգաւորներին։

Իսկ ժողովուրդը ի՞նչպէս է նայում իւր տան քահանային, երբ նա մտնում է տուն. հասկացողը թող հասկանայ, միայն այսքանս կարելի է ասել, քահանան այն ժամանակ միայն պարզերես կարող է մտնել իւր ժողովրդի տունը, երբ ժողովուրդը համոզուած կլինի որ քահանան իրանից պատահական ակնկալութիւն չունի. իսկ երբ չի ունենալ քահանան այդպիսի ակնկալութիւն իւր ժողովրդից՝ երբ կանոնաւոր ռոճիկով ապահովուած կլինի. այն ժամանակ քահանան, յիրաւի ո՛չ իբրև կէս մուրացկան, այլ իբրև հայր և դաստիարակ կմտնէ իւր ժողովրդի տունը և ժողովուրդը նորան սիրով կընդունէ, որովհետև փողի ակնկալութիւն չկայ այլ ևս։ Ուրեմն կանոնաւոր ռոճիկը քահանայի կաշկանդուած քայլերը ընդհակառակն շատ համարձակ բացանելով հանդերձ և իրաւունք է տալիս պարզերես մտնել իւր ժողովրդի տունը. և ոչ որպէս այժմ—ահուդողով. իսկ թէ ռոճիկը պատճառ կլինի արդեօք քահանային զանցառու լինել իւր պարտականութեանց մէջ՝ այդ աներևակայելի է մինչև անգամ. և եթէ փորձը մի այլ հանգամանքում ցոյց է տուել մի այդպիսի տգեղ վարմունք որևիցէ պաշտօնակատարի նկատմամբ՝ դա դեռ ապացոյց չէ, թէ կանոնաւորութիւնից անկանոն վարմունք պէտքէ սպասել. բայց բացառիկ հանգամանքների վերայ եթէ հիմնուենք, ո՛չ մի օրէնք չի

կայանայ, ո՛չ մի բարեկարգ հիմնարկութիւն չի կազմակերպուի և ոչ մի գաղափար չի մարմնանայ և չի իրագործուի։

Արժանաւոր վարձը, սահմանեալ ժամանակին ճշտութեամբ վճարած՝ ոչ թէ զանցառութիւն կարտադրէ, այլ ամենայն զանցառութեանց առաջը կառնէ. և վարձկանը իւր նիւթական այդ ապահովութեամբ և բարոյապէս կզօրանայ։

Երբ տանը հաց չկայ ուտելու, ո՞ր քահանան ստոյիկեան կլինի իւր ժողովրդի բարոյական կրթութեան վերայ մտածելու. տո՛ւր ցյագ հաց և ոյժ՝ պահանջի՛ր կանոնաւոր գործ և աշխատանք։

Երրորդ կէտը, թէ հոգևորականը զրկուած պիտի լինի և զրկանաց ու կարօտութեան վիճակին պիտի ընտելանայ. եթէ չասեմ հիմնական չէ՝ դէթ ժամանակի ոգւոյն և արգի աշխարհհայեցողութեանը՝ բընա՛ւ անհամապատասխան. զրկանաց և կարօտութեան վիճակին ամէն ոք պարտական է սովորել, ընտելանալ և ո՛չ միայն քահանան, իսկ թէ զրկուած լինելով կհամապատասխանէ՞ արդեօք ներկայ հանգամանաց և պահանջներին, երբ կեանքը այդ չէ պահանջում. կար յիրաւի ժամանակ, երբ զրկուածը յարգի էր, նորան յարգում էին, նահատակ էր՝ նորան պաշտում էին. բայց աւա՜ղ, այժմ զրկուածին աւելի են զրկում, աւելի են ոտնահարում. ժամանակը փոխուել է, հանգամանքները նոյնպէս, մարդը՝ նոյն ժամանակի գործադիրը, հոշւով ու խելացի տնտեսի նման պիտի կենցաղավարի. ո՛չ ժամանակի ուժգին հոսանքին բոլորովին պիտի դիմադրէ՝ որովհետև չէ կարող, և ո՛չ միամտաբար նոյն հոսանքից պիտի ընկճուի. այլ

իբրև օձ խորագէտ՝ պիտի սողայ իւր պտոյտնե-
րով և իբրև աղաւնի միամիտ՝ պիտի հրճուի իւր
թռիչքներով։ Զանցաւ արդեօք այն ժամանակը, երբ
ժողովուրդը լիացնում էր իւր քահանային ամենայ-
նիւ և յամենայնի. չանցաւ արդեօք այն ժամանակը,
երբ քահանան չէր միայն քահանայ իւր ժողովրդի
համար, այլ էր նա և՛ քահանայ, և՛ ուսուցիչ, և՛ սե-
ղանակից, և՛ ընկեր, և՛ հայր, և՛ տէր, և՛ խորհրդա-
տու, և՛ դատաւոր, և՛ փաստաբան, և՛ ամենայն ինչ.
և ըստ այնմ իսկ՝ ժողովուրդը աւելի շուտ ինքը կը-
մնար քաղցած, մերկ, ծարաւ և այլն. քան թէ իւր
քահանան և քահանայական գերդաստանը—տէրտէրի
օճախը. աւաղ փառացն անցաւորի. քահանայական
այդ փառքն անցաւ. որովհետև ժամանակն էլ փոխուե-
ցաւ. ժողովուրդը իւր համեստ կենցաղավարութեան
շրջանից դուրս եկաւ, քահանան էլ դուրս եկաւ. ժո-
ղովուրդը շռայլացաւ, քահանան էլ շռայլացաւ. ժողո-
վուրդը հետևեց կեանքի հոսանքին, քահանան էլ հե-
տևեց. որովհետև ժողովրդի ձայնը բարձրացաւ, իսկ
քահանայինը քանի գնաց մեղմացաւ ու ցածացաւ.
Ում շնորհիւ. և՛ ժամանակի, և՛ քահանայի, և՛ մանա-
ւանդ անհեռատես թղթակիցների։ Այժմ այն ժամա-
նակը չէ, որ եթէ քահանան հոգևորը սերմանէ՝ յոյս
ունենայ որ մարմնաւորն էլ դիւրաւ և առանց ան-
բաւականութեան կհնձէ. ով չէ հաւատում՝ թող բա-
րեհաճի ստուգել այս ամենը. և կհամոզուի որ իւր
համեստութեան քօղը պատառել չուզող քահանան
քաղցած է մնում և նա կաղքատանայ բնաւին եթէ
կողմնակի պարապմունքներ չունենայ, այն է կամ
ուսուցչութիւն և կամ այլ պարապմունքներ՝ որոց

թուելն ու անուանելը և՛ աւելորդ եմ համարում և՛ անյարմար։ Եթէ կառարկեն—թէ լաւ քահանան կըպաշտպանուի իւր ժողովրդից, կպատասխանեմ՝ թէ սխալ է. հաստ ու բարակ մի գին ունի. այդ էլ փորձուեցաւ և օգուտ և ոչ մի երևեցաւ. ուրեմն մնում է մի ելք միայն, որ է քահանայի նիւթական ապահովութիւնը կանոնաւորել ռոճկով։

Ուրեմն հոգևորականներին նիւթական ապահովութիւն է հարկաւոր և ամեն ոք կ՛հաստատէ այդ. մինչև այժմ մեր պարբերական թերթերի մէջ չէ յայտնուել մի այնպիսի իրական միջոց, որը թէև դժուարին՝ սակայն և այնպէս գոնէ շատ հեռու չլինէր իրագործման սահմանից. ես չեմ ուրանում որ մեր մէջ մի չնչին գործ անգամ գլուխ բերելու համար սարսափելի դժուարութիւնների ու խոչընդոտների կհանդիպուի, ո՜ւր թէ մի այնպիսի ծանրակշիռ գործ, որպիսին է հոգևորականաց կանոնաւոր ռոճկի խնդիրը, և այն՝ դարաւոր սովորութիւնից յետոյ. 'ի հարկէ այս դէպքում ոչ յօդուածագրերն են մեղաւոր և ոչ ամենայն մի միտք յայտնող հրապարակախօս. այլ ժամանակին պիտի սպասել, միշտ արծարծելով հոգևորականաց նւիթական ապահովութեան խնդիրը, որպէս զի ժողովուրդը հետզհետէ ընտելանայ և պատրաստուի այդ խնդրի իրականացմանը. որովհետև այսօր է թէ վաղը, կանոնաւոր ռոճկով պէտքէ ապահովել հոգևորականաց նիւթական դրութիւնը. քանի որ յայտնի է՝ որ ամենայն մի գործ և աշխատանք իրենց արժանաւոր վարձն են պահանջում։

## III.

*Ռոճիկ տալու դէմ առարկողների մի այլ ձև փաստաբանութիւն և պատասխան։*

Կան առարկողներ, թէ բժշկի դրութիւնն էլ գրեթէ նման է քահանայի դրութեանը․ նա կանոնաւոր ռոճիկ չունի, այլ նորա այցելութիւններն են գնահատւում․ և սակայն և՛ ապահովուած է և՛ կանոնաւոր կենցաղ է վարում․ քահանան ևս նոյնպիսի մի հոգևոր բժիշկ՝ իւր այցելութիւններից—օրհնակատարութիւններից գոյացած արդիւնքներով թող կառավարուի․ ինչպէ՞ս կարելի է կանոնաւոր ռոճկի տակ ճնշել ժողովրդին, երբ նա իւր գլխահարկը հազիւ է վճարում։

Ինչ ասենք այսպիսի առարկողներին․ կհամեմատուի՞ արդեօք բժշկի վիճակը քահանայի վիճակի հետ․ ամենայետին բժիշկն անգամ օրական առնուազն երկու երեք այցելութիւն կունենայ․ երեք այցելութեան վճարն տասն արծաթ, ամիսն անում է երեք հարիւր արծաթ․ բայց ո՞ր բժիշկն է՝ որ այսպիսի սուղ վարձատրութիւն ունի․ քանի որ սովորական մանկաբարձուհիների—տատմէրների վարձատրութիւնն անգամ հասնում է այս գումարին․ եթէ չասեմ աւելի է. իսկ քահանային տուէք դորա կէսը՝ հարիւր յիսուն արծաթ ամսական ռոճիկ և նա ապահովուած կլինի։ Բացի այդ՝ բժշկի վարձատրութիւնը կանոնաւոր ռոճկի նշանակութիւն ունի․ գուցէ և աւելի լաւ և նորա-

նից, որովհետև գրեթէ ամենայն օր կայ, ամենայն օր նրա գրպանից դրամի ձայն է գալիս. իսկ քահանայի գրպանում խոր լռութիւն է տիրապետում. և վերջապէս ինչպէս համեմատենք բժշկի այցելութիւնը քահանայի այցելութեան հետ, բժշկի համար պատրաստած այցելութեան վարձը կարծես ելեքտրականօրէն է դուրս ձգւում հիւանդի կամ նորա բարեկամի քսակից. և մի ակնթարթում մտնում է բժշկի գրպանը. այնքան սիրով և այնքան փութով է կատարւում այդ գործողութիւնը. իսկ քահանայինը՝ կամ չնչին և տրտունջներով, կամ ապառիկ և կամ ոչինչ. բացառիկ արժանաւոր վարձատրութեան մասին չէ խօսքս, որովհետև շատ հազիւ է պատահում։ Այսպէս պէտքէ հասկանալ նաև փաստաբաններին ու նման պաշտօնեաներին։

Այս ամենից կարելի է հետևացնել, որ կան պաշտօնավարներ, որոնք թէև բժշկի և քահանայի նման կանոնաւոր ռոճիկ չունեն, սակայն և այնպէս՝ այնպիսի պայմանների մէջ են, որոնցմով նոցա դրութիւնը ապահովւում է։ Բժշկի գործունէութիւնը ապահով պայմանների վրայ հիմնուած լինելով՝ անընդհատ յառաջ է քայլում. բժիշկը իրեն սահմանուած գործը կատարում է և չէ ձանձրանում, որովհետև վարձը միշտ կայ և արժանաւոր վարձէ և սիրով է տրւում։

Ուսուցչութիւնը իւր կանոնաւոր վարձատրութիւնն ունի. և ուսուցիչը իւր հաշուի մէջ սխալուել չէ կարող, որովհետև նշանակուած ռոճիկ ունի և ստանում է այն նշանակեալ ժամանակին։ Կանոնաւոր ռոճիկը արգելում է արգեօք ուսուցչին ճիշտ լինել իւր պարտակատարութեան մէջ. և գժտութիւն

կամ հակառակութիւն ձգում է արդեօք ուսուցչի և նորա սաների, և կամ հէնց նոյն իսկ տեսչի և հոգաբարձութեան մէջ։ Թո՛ղ ուսուցիչները խոստովանեն իսկութիւնը. բացառութիւնների դէմ խօսք չունեմ. ես գոնէ, 'ի մասնաւորի, երեսնամեայ ուսուցչութեանս ասպարիզում ո՛չ մի անպատեհութեան չեմ հանդիպած։

Մշակութիւնն անգամ մի որոշեալ պայմանի տակ է, որովհետև մշակը նախապէս պայմանաւորւում է գործատիրոջ հետ, ապա թէ սկսում է ձեռնարկել գործին։

Ինչպէս վերոյիշեալ պաշտօնները, նոյնպիսի պաշտօն է և քահանայութիւնը. այն զանազանութեամբ սակայն, որ այս պաշտօնավար քահանայի վարձատրութեան քանակը և ժամանակն իսկ անորոշ է, պատահական է և ո՛չ ըստ գործոյն։

Ամենայն գործ կամ աշխատանք համեմատական վարձատրութիւն է պահանջում, գործի կամ աշխատանաց դժուարութեան ու դիւրութեան համեմատ պիտի վարձատրուի գործաւորը կամ աշխատաւորը, և այն՝ միշտ որոշեալ պայմանով։

Վերոյիշեալ գործերի և գործաւորների մէջ պահանջուած համեմատութիւնը նշմարելի է. ըստ գործոյն վարձ կայ և որոշեալ պայմանով. քահանայական գործունէութեան մէջ այդ համեմատութիւնը չէ երևում։

Բժիշկը գործում է. նա յոյս ունի որ իւր գործին համապատասխան վարձ ունի, և արժանաւոր վարձ, կամ սահմանուած ռոճիկ. նա ապահով է, նա իւր կենսական հացիւը ծրագրել է. ուստի և ընտա-

նեկան կեանքն էլ մի որոշեալ սահման ունի. որից այն կողմը անցնելու կարիք չունի. որովհետև արժանաւոր վարձատրութիւն ունի, որը հաւասար է կանոնաւոր ռոճկին։

Մշակը գործում է. նա գործը սկսելուց առաջ պայմանաւորւում է գործատիրոջ հետ իւր աշխատանաց վարձի մասին. պայմանը հաստատւում է ըստ գործոյն և նա գործում է. նա ապահով է, նա ուրախ է իւր գործի մէջ, որովհետև իւր վարձը որոշուած է թէ՛ քանակով և թէ՛ ժամանակով։

Այս հանգամանքների և պայմանների տակ են ուսուցիչները, փաստաբանները, արհեստաւորները և առհասարակ բոլոր պաշտօնավարները. նոքա գործում են և ապահով են, որովհետև ըստ գործոյն՝ վարձ ունին որոշեալ քանակով և ժամանակով։

Եւ սա շատ բնական է. այսպէս և պէտք է լինի. մի գործ որ արժանաւոր վարձ չունի, ո՛չ երկարատև կլինի և ոչ բարեկարգ. իսկ գործավարը եթէ ըստ գործոյն չէ վարձատրւում, ո՛չ եռանդոտ կլինի և ոչ տոկուն գործող. եթէ ենթադրելու լինենք թէ գործը ինքն ըստ ինքեան շատ թեթև է և ամենադիւրին աշխատանք է միայն պահանջում, այնուամենայնիւ նա յառաջադիմութիւն, տևողականութիւն չի ունենայ, եթէ արժանաւոր վարձ չունի. ընդհակառակն եթէ գործը ծանր է և ամենադժուար աշխատանք է պահանջում և սակայն արժանաւոր վարձ ունի, նա անշուշտ կյառաջադիմէ և յարատևութիւն կունենայ։

Քահանայութիւնն եւս մի գործ է, ինչպէս և ուսուցչութիւնը, բժշկութիւնը, մշակութիւնը... և այլն.

բայց այդ գործը համապատասխան վարձատրութիւն չունի. քահանան էլ նոյնպէս մի գործավար է, ինչպէս և բժիշկը, ուսուցիչը, մշակը և այլն. բայց քահանան անորոշ վիճակի մէջ է. նա եթէ և կամենայ բարւոքել իւր ընտանեկան կեանքը, եթէ և կամենայ սահմանաւորել կենսական պահանջները, եթէ և հաստատուն մի ուղղութիւն կամենայ տալ իւր ընտանեկան կենցաղավարութեանը՝ այնուամենայնիւ նա կդժուարանայ, որովհետև չունի որոշեալ չափով և նշանակուած ժամանակով իրեն յատկացրած մի ռոճիկ. նա այսօր կարող է շատ ձեռք բերել, վաղը քիչ. միւս օրը բոլորովին ոչինչ. այսպիսի անորոշ և անկանոն տուրքից կամ արդիւնքից ինչ պէտք է ենթադրել, եթէ ոչ նոյնպիսի անորոշ կեանք և անհաշիւ ու անկարգ կենցաղավարութիւն։

Առարկութիւն կլինի թէ, բժիշկը որ ապահովուած է և նորա առջև շատ սիրով է համարւում վարձագինը, պատճառն այն է, որ բժիշկը ունել է իւր առարկան, համապատասխան է իւր կոչմանը, նա յարգւում է և ուրեմն լաւ վարձատրւում. այնպէս է և ուսուցիչը և փաստաբանը, աշխատասէր մշակը և հմուտ արհեստաւորը. բայց քահանան համապատասխանո՞ւմ է իւր կոչմանը. նա ունե՞լ է իւր քահանայական կոչմանը գոնէ անհրաժեշտ համարուած առարկան. նա շրջո՞ւմ է իւր ժողովրդի տները իբրև հոգևոր հայր, իբրև բարոյական դաստիարակ. չէ՞ որ ըստ գործոյն և գործավար է հարկաւոր. քահանան համապատասխանո՞ւմ է իւր ծանր և վսեմ գործին... և այլն և այլն. Նկատողութիւնը ըստ մասին իրաւացի է. բայց ո՞վ է մեղաւոր, դարձեալ քահանայի դրութիւնը. ա-

նապահով վիճակ, անորոշ կենցաղավարութիւն. Ո՞ւմն է նախանձելի. ինչու փոքր ի շատէ կրթուածներն ու հանճարաւորները փախուստ են տալի այդ ասպարիզից՝ որովհետև ասպարէզը ինքնին նախանձելի չէ. եթէ առաջինք փախուստ են տալի՝ ասպարէզը մնում է յետիններին, ինչ անենք. Թող անձնազոհաբար մտնեն, տքնեն, ջանք անեն և ասպարէզը կմաքրուի. իրենք հեռու են մնում, իսկ ասպարէզը մնում է յետիններին։ Եւ այս է պատճառը, որ քահանայի և ժողովրդի մէջ տիրող աննախանձելի յարաբերութիւնները քանի գնում՝ սուր, անհամակիր և տխուր կերպարանք են ստանում։

---

## IV.

### Քահանայի կոչման վսեմութիւնը.

Մեր ժողովուրդը, թէ տգէտ, թէ լուսամիտ, թէ հարուստ և թէ աղքատ՝ շատ աննշան բացառութեամբ, շատ լաւ են հասկանում և՛ քահանայի կոչումը՝ և՛ իրենցը. այսու հանդերձ շատ լաւ էլ գիտեն թէ ո՛րպիսի յարաբերութիւնք տեղի պիտի ունենան այդ երկու դասակարգերի մէջ և ո՛րպիսի փոխադարձ պարտականութիւնք են պահանջւում երկուստէք։

Ո՞ր ժողովրդական անհատը չգիտէ, բացառութիւնները մէկ կողմ, թէ քահանան է կրօնական

հանդիտի այն հոգևոր պաշտօնեան, որ իւր հոգևոր պաշտօնէութեամբ, իրան նայող, հետևող և ունկնդիր ժողովրդին մատակարարում է հոգևոր պիտոյքներ. և քարոզում, ուսուցանում է Աւետարանական կենդանի և փրկարար խօսքը։

**Քահանան** է ժողովրդի ամենամօտ ընկերը, բարեկամը և վերջապէս հոգևոր հայրը, որ ցաւակից է ժողովրդի ցաւերին. և ուրախակից՝ նորա յաջողութեան, առողջութեան և առհասարակ բոլոր ուրախութեանց. նա է ժողովրդի թէ ուրախ և թէ տխուր երևոյթների իրագործման անկասկածելի միջնորդը՝ ըստ առաքելական բանին. «Ո՞ հիւանդանայ՝ և ոչ ես հիւանդանամ. ո՞ գայթակղի և ոչ ես տապանամ. ուխտիւք խնդրէի ես ինքնին նզով լինել ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց և ազգականաց ըստ մարմնոյ»։

**Քահանան** է այն համակրելի անհատը, այն պատկառելի անձնաւորութիւնը, որին վստահանալով ժողովուրդը՝ բաց է անում նորա առաջ իւր կրօնական—հոգևոր և աշխարհային մարմնաւոր բոլոր ներքին զգացմունքները, խոստովանութիւնք, և հոգւոյ ամենատեսակ տրամադրութիւնք. յուսալով նրանից լսելու և ստանալու այդ ամենայնի բուժիչ և ապաքինիչ բոլոր միջոցները։

**Քահանան** է այն ծանր պատասխանատու անձնաւորութիւնը, որը ուխտել է տալ հաշիւ Աստուծուն, խղճին և հասարակութեանը՝ ժողովրդական ամեն մի անհատի մահացու և ներելի պարտազանցութեանց մասին։

Մի իրական օրինակով հաստատենք վերոյիշեալը —Մի քահանայորդի, որը երկար ժամանակ եկեղե-

ցական ստորին պաշտօնէութեամբ ծառայելով Աստուծոյ տաճարին, իւր արժանիքը երաշխաւորել էին նորան 'ի քահանայութիւն՝ և տեղական եպիսկոպոսը ամենայնիւ վստահ նորա արժանեացը, երեկոյեան ժամերգութեանը կոչում տուաւ նորան, միւս օրը 'ի կարգ քահանայութեան ամբառնալու մտօք, միւս առաւօտ յայտնւում է—թէ քահանայացուն չկայ, փախել է։ Ի հարկէ խափանւում է Ս. Պատարագը, որովհետև ձեռնադրւողը չկայ։ Մի քանի ժամանակից յետոյ յայտնւում է նա. տանում են նորան Եպիսկոպոսի մօտ. որի հարցմանը—թէ ինչո՞ւ է փախել. պատասխանում է. «Սրբազան հայր. այս գիշեր ես մի այնպիսի երազ տեսայ, որ թէև երազ՝ սակայն ինձ վերայ այնպէս ազդեց՝ որ ոչ միայն չեմ կարող վստահանալ յանգգնել ի քահանայութիւն՝ այլ այսուհետև անպայման պիտի խոնարհիմ յոտս քահանայից և անհուն ակնածութեամբ և յարգանօք պիտի պաշտեմ այդ՝ ժողովրդի մեծ պարտապանին, ծանր պատասխանատուին»։ «Ի՞նչպէս». հարցնում է սրբազանը. «Սրբազա՛ն հայր». շարունակում է ընծայացուն, «ես հօրս տեսայ երազումս. նա զգեստաւորուած էր իբրև պատարագիչ. շալակած ունէր մի մեծ և լիքը ջվալ. նա բարձրանում էր մի սանդուխով, որի ծայրը հասնում էր երկինք ու էլ չէր երևում. ես սարսափահար վազեցի թէ հօրս օգնեմ. նա ինձ ասաց. «հեռո՛ւ կաց որդի. քո բանը չէ». հարցրի. «այդ ի՞նչ ես շալակել հայրիկ», պատասխանեց. «այս իմ ժողովրդի մեղքերն են, որոց համար երաշխաւոր եմ եղած Աստուծոյ առաջ, ինչպէս երաշխաւորել եմ՝ այնպէս և հաշիւ ու պատասխան պիտի տամ Աստուծուն ըստ երաշխա-

*ւորութեանս»։ Յետոյ սկսաւ բարձրանալ. Սրբազան հայր. ինչ նեղութեամբ էր բարձրանում... մի՞թէ կարելի է պատմել—շուրջառի, ժամաշապկի, իւր կապայի քղանցքները անդադար ոտի տակն էին ընկնում. երբեմն մի ձեռքով ջվալի բերանն ու սանդուխի ափը և միւս ձեռքով փեշերը բռնած էր բարձրանում, իսկ սաղաւարտի տակից քրտինքը ծորում էր երեսի, ականջների վերայ. երբեմն էլ հանգստանում էր, հոգւոց էր հանում և ասում. «փառք քեզ Աստուած, որ արժանացնում ես ինձ կանչել քեզ մօտ 'ի հաշուետւութիւն ժողովրդիս մեղքերի». այս որ տեսայ՝ էլ նայել հօրս չկարողացայ և ուշագնաց ընկայ։ Զարթեցի և տեսայ որ երազ էր. բայց այնպէս սոսկացի, ամբողջ մարմնիս մի օրհասական սարսուռ տիրեց. ջերմեցի երկիւղիցս ու փախայ. մտածում էի—մի՞թէ կարող եմ ես ժողովրդի մեղքերի պատասխանատւութիւր վրաս առնել. ո՛չ, ո՛չ. իմ մեղքերիս պատասխանատւութիւնն էլ ծանր է ինձ համար, ուր թէ ժողովրդինը։ Այս է պատճառը, Սրբազա՛ն հայր, որ ես այսպիսի մի քայլ արի, այժմ ամենախոնարհաբար խնդրում եմ—ներեցէք ինձ անկարդ վարմանս համար, ես անկանոն շարժուեցայ, որ նախապէս Ձեզ չյայտնեցի. բայց անհաբեկուած էի, սարսափած էի. կանոնաւոր վարուելը իսպառ մոռացայ»։ Սրբազանը գովեց նորա պարտաճանաչ սիրտը, ազնիւ հոգին, արթուն խիղճը և օրհնելով արձակեց նորան։*

*Երբ արարած մարդը դեռ նոր է բաց անում աչքերը ընդարձակ տիեզերքի անսահմանութեան մէջ՝ նա բնութեան անօրինակ հրաշալեաց ճակատին կարդում է Ամենակարող Ձեռքի Սքանչելի Արտադրու-*

թիւնը, և այդ Արտադրողի անունը՝ նա Ստեղծող և Արարիչ է լսում ու սովորում. և այնուհետև ամենայն ակնածութեամբ և երկիւղիւ խոնարհւում է այդ Աներևոյթ՝ բայց իւր Սքանչելի Ձեռակերտի մէջ լուսափայլող Արարչի առաջ, պաշտում է Նորան և ասում է Պրուդոնի և Ռուսսոյի խօսքերը. «Զարմանալի է, որ ամեն բանի տակ Աստուածաբանութիւն է ծածկուած». (Պրուդոն). «Որքան աւելի եմ ձգտում կամ աշխատում ճանաչել Աստուծոյ իսկութիւնը կամ ճշմարտութիւնը, այնքան Նուազ եմ ըմբռնում կամ հասկանում. բայց այս ևս շատ է ինձ, որ Նա կայ. քանի Նուազ եմ հասկանում կամ ըմբռնում՝ այնքան աւելի երկրպագանում եմ Նորան. խոնարհեցնեմ ես ինձ և ասեմ Նորան. Ո՛վ Արարիչ Աստուած բոլոր արարածների, ես կամ՝ որովհետև Դու կաս. իմ մտաւոր և հոգևոր բարձրութիւնն այն է՝ որ միշտ Քեզ վրայ մտածեմ, իմ բանականութեան ամենալաւ կենցաղավարութիւնն այն է՝ որ ինձ ոչինչ համարեմ Քո առաջին, իմ հոգւոյ հիացումը և իմ տկարութեան սփոփարութիւնն այն է՝ որ ինձ ընկճուած տեսնեմ Քո մեծութիւնից» (Ռուսսօ)։ Արարչի այդ Սքանչելի Ձեռակերտի Ստեղծագործութիւնն ու Խնամարկութիւնը ժողովրդին ուսուցանողն է Քահանան։

Հիւանդին կամ մահուան անկողնում ընկած անդամալուծին, որը պատրաստւում է տալ իւր անդառնալի բաժանման վերջին հրաժեշտը՝ սիրելիներին, հարազատներին, վերջապէս ցանկալի կեանքին ու աշխարհին՝ հարազատաբար յուսադրողն ու մխիթարողն և երկնային յուսով ճշմարտապէս պարարողն է Քահանան։

Վշտացածի, գրկուածի և աշխարհային բիւրատեսակ հոգսերով գառնացած, յուսահատուած, անմխիթար ու թշուառ վաստակաւորների ու բեռնաւորների ողբալի ու ցաւալի վիճակն ու դրութիւնը մեղմացնողն ու թեթեւացնողն է—Քահանան Աւետարանական քաղցրաձայն սրնգի անուշալուր հնչիւնով։

Մարդկային կեանքի և փրկական աշխարհի առաջին աստիճանի վրայ նորածին երեխայի գողդոջուն ոտքերը գնողն ու ամրապնդողը. և Հաւատով, Յուսով ու Սիրով Երկնաւոր Հօր Որդեգրութեանը, արքայութեան ժառանգութեանը, Քրիստոսի եկեղեցւոյ Զինուորութեանը և Սուրբ Հոգւոյ Տաճարանալուն պատրաստողն ու հասցնողն է Քահանան Ձեռնափարատէք Ծիսակատարութեամբ և սուրբ Մկրտութեան փրկարար խորհրդով. և Սուրբ Հոգւոյ Շնորհօք սպառազինողն է գարձեալ նոյն Քահանան խորհրդոմն Դրոշմի։

Յանցանքի, մեղքի և պէս պէս պարտազանցութեանց մահաթոյնը շրթունքներին մօտեցնող անառակ որդւոյ փրկիչն է նոյն Քահանան Ապաշխարութեան և Հաղորդութեան փրկարար խորհրդոյ մատակարարմամբ։

Յետ ժամանակաց նորա ամուսնական և ընտանեկան կեանքի երջանկութիւնն ու բարօրեալ վիճակը սկսողն ու անբաժան յօդերով միաւորողն ու հաստատողն է—Քահանան, Պսակի կամ Ամուսնութեան ազատական խորհրդոյ մատակարարմամբ։

Միով բանիւ Արարչի, 'ի պատկեր իւր Ստեղծագործեալ, բանական արարածի երկրաւոր կեանքի մէջ

ընդունողը, նոյն կեանքի մէջ հոգևորապէս խնամարկողը և յետ երկրաւոր կենաց խորհրդով Վերջին օծման, դէպի երկնային կեանքը առաջնորդողն է—Նոյն Քահանան։

## V.

*Ժողովրդի և քահանայի սառն յարաբերութեանց պատճառները.*

Այս Քահանան է այն, որից փարախներով հեռու է շրջում ժողովուրդը, ո՛չ նորա օգնութեանը պատշաճաւոր դիմումն անելով ո՛չ նորան արժանաւոր յարգանքը տալով, և ո՛չ նորան մօտաւորուելով, ոչ ընտանենալով և ոչ կարեկցելով ու օգնելով։

Արդ՝ տեսնենք այժմ մի քանի տխուր երևոյթներ, անմերձենալի հեռաւորութիւններ, սառն և անհամակիր յարաբերութիւններ նոյն Քահանայի և նորա հովուութեանը յանձնուած հօտի մէջ։

Վերոյիշեալ սուրբ և վսեմ պարտաւորութիւնները կատարող քահանան գիտէք երբ իրաւունք ունի մտնելու իւր ժողովրդի տունը՝ երբ վերջինս կարևորութիւն է տեսնում նորա մէջ հոգևոր ծխակատարութեանց, սրբազան արարողութեանց և խորհրդակատարութեանց ժամանակ։

Ժողովրդի հարուստ կամ բարձր դասակարգի տունը քահանան մտնում է անհամարձակ։ Այդ դասակարգի վարմունքը և յարաբերութիւնը դէպի իւր քահանան աւելի իշխանական, հրամայական է, քան

թէ ծխական, մտերմական և, որ իսկը պիտի լինի, որդիական։ Այս դասակարգի շարժմունքը, վարմունքը և խօսակցութիւնքն առհասարակ աւելի արհամարհական են, կարելի է ասել, դէպի քահանան՝ քան թէ համակրական կամ յարգական։ Քահանայի դրութիւնը այս դասակարգի մէջ աւելի ծառայական—սարկական է քան թէ ազատական։ Քահանան մտնում է այս դասակարգի տունը ոչ իբրև հայր կամ բարեկամ, այլ իբրև մի չինովնիկ, որ իւր պաշտօնը պիտի կատարէ. և նանից յետոյ ոչինչ առընչութիւն չկայ իւր և ժողովրդի մէջ. և եթէ պատահէ՝ որ քահանան համարձակուի նորա իշխանական—տիրական հրամանները ճշտիւ չկատարել՝ այն ժամանակ աչքդ բարին տեսնէ. կամ քահանան պիտի հրաժարեցնուի և կամ յարաբերութիւնները այն աստիճան դէպի չարը պիտի փոխուին՝ որ աւելի լաւ է քահանան ինքը հեռանայ նոյն տան հովւութիւնից։ Վերջապէս, 'ի մի բան ասելով, ժողովրդի այդ դասակարգը չէ սիրում, չէ յարգում, չէ համակրում իւր քահանային իբրև իւր տան հայր և բարեկամ, այլ լոկ՝ իբրև պաշտօնեայ. և այդ է պատճառը՝ որ քահանան կարօտ է մնում իւր կեանքում մի օր, գէթ մի ժամ նստելու իւր այդ հարուստ կամ իշխան կամ կրթեալ ժողովրդի տանը և խօսակից լինել նորան։ Այդ դասակարգը սովոր է պահանջել քահանային այն ժամանակ՝ երբ հարկը ստիպում է. և պահանջելով նորան՝ պատուիրում է գնալ Կոնսիստոր եւ հանել իւր որդւոյ համար ծննդական վկայականներ, վերցնել պսակի հրաման, տալ քաղուածք կամ պսակի, կամ մահուան։ Ինքը՝ այդ դասակարգը ափսոսում է իւր ժա-

մերը, կարծես քահանայի ժամերը փողոցումն են թուլացած. և կամ արժան չէ համարում ոտք դնել Կոնսիստորի շեմքը և անձամբ ստանալ իւր ցանկացած վկայաթղթերը. Նորա գործակատարն է խեղճ քահանան. որ փոխանակ հովուութիւն անելու՝ ինքն է ոչխարանում իւր ոչխար—հովուի դագանակից վախենում: Քահանան իրաւունք ունի մուտք գործել այդ դասակարգի տունը այն ժամանակ՝ երբ պահանջում իրան Մկրտելու, Պսակելու, Թաղելու և այլն:

Արտաքոյ այս և այսպիսի հանգամանքների՝ քահանան մնում է հեռու այդ դասակարգից և անմերձենալի նորան: Եթէ պատահմամբ հանդիպում է քահանան այդ դասակարգին փողոցում և կամ այլուր՝ շատ յաճախ քահանայի ողջոյնն իսկ մնում է անպատասխան. կամ այնքան սառն ու պաշտօնական՝ որ անպատասխան մնալուն է գրեթէ հաւասար:

Ժողովրդի միջին կամ աղքատ դասակարգերի տները քահանան մտնում է վստահաբար. որովհետև փոխադարձ յարգանք է վայելում այդ դասակարգերից: Սակայն և այստեղ պակաս չէ իսկական, օրինական և պատշաճաւոր յարաբերութեանց խանգարիչ քարը:

Ժողովրդի այդ դասակարգերը իրենց քահանայի մէջ, եթէ չասեմ տեսնում, գէթ կամենում են տեսնել՝ թէև ըստ մասին քահանայ, այլ ըստ մարմնացեալ հասկացողութեան իւրեանց՝ ընկերակից և գործակից իրենց հազար ու մի աշխարհային աններելի կենցաղավարութեանց, որոնք պատուաբեր չեն քահանայական կարգին: Նորա պատրաստ չեն և չեն իսկ ընդունակ, խօսքս բացառութիւններին չէ վերաբերում, տեսնել քահանայի մէջ ընկերակից և գոր-

ծակից սուրբ, օգտակար, արդար և առաքինի կենցաղական պայմանների մէջ. այլ լոկ աշխարհասէր, շռայլ, գեխ և անբարոյական կենցաղավարութեան մէջ։ Նոքա չեն կամենում տեսնել իրենց քահանայի մէջ մի պատկառելի, սուրբ և նուիրական անձնաւորութիւն՝ որը պիտի ընդունուի իրանցից իբրև հոգևոր հայր, եղբայր, բարեկամ և դաստիարակ. որի գաղափարական կեանքը՝ օրինակ և հեղինակութիւն պիտի համարեն իրենց կենքին։ Նոքա սպասում են որ քահանան իրենց հետ պարապոյ ժամեր անցկացնէ կերուխումներին, թղթախաղերին, բամբասանքներին, դաւադրութիւններին և սոցա նման դազիր՞ ու գարշելի կենցաղական զեղխութիւններին մասնակցելով, և այս է պատճառը՝ որ նոքա զզւում ու գարշում են այն քահանաներից՝ որոց խօսքը, վարմունքը և համակ կենցաղավարութիւնը՝ լուրջ է, խրատական է, համեստ է և իսկ քահանայական է. այդ դասակարգի ճակատը կնճռւում է և դէմքը այլայլւում՝ երբ կրթիչ խօսք են լսում իրենց քահանայից. որովհետև սովոր չեն քահանայի մէջ այդ արժանիքը տեսնելու։

Եւ այսպէս առաջին դասակարգին չէ կարողանում մօտենալ քահանան. իսկ միջին և վերջին դասակարգերից ստիպուած է հեռանալ քահանան. բայց ո՞ր քահանան՝ պարտաճանաչ քահանան։

Այս այսպէս լինելուց յետոյ, չէ կարելի ծածկել և չխոստովանել մի ճշմարտութիւն—որ ժողովրդի միջին դասակարգը, համեմատաբար, աւելի պարտաճանաչ է իւր, դէպի քահանան ունեցած, յարաբերութեանց մէջ, քան թէ առաջին և վերջին դասակարգերը։

---

# VI.

*Ժողովրդի անարգական վերաբերմունքը դէպի օրինակատարութիւններն ու օրինակատար քահանան։*

Այդ երեք դասակարգերի յարաբերութիւններից մի քանի օրինակներ յառաջ բերենք—պատահում է Պաւլին. և դուք վերջին դասակարգի պսակադրութեան ժամին խաղաղ հոգւով չէք կարող ներկայ լինել Աստուծոյ տաճարում. նոցա հայհոյանքները, աղաղակները, կռիւը, հանաքները, մաոխարութիւնները, մինչև անգամ իրար գլխի խփելը և այլն և այլն. խլացնում են Աստուածպաշտութիւնը և քահանան ստիպուած է լինում ընդհատել սուրբ խորհրդակատարութիւնը և դդաստութեան հրաւիրել ժողովրդին։ Առաջին դասակարգը այս պակասութիւնից զերծ է. բայց նրա ունեցած պակասութիւնն էլ սրանից թեթև չէ. նա էլ ստիպում է քահանային—որ խորհրդակատարութիւնը կրճատէ, յորդոր ասէ, շուտ աւարտէ. թէ շոգ է՝ շոգի պատճառաւ, թէ ցուրտ է՝ ցրտի պատճառաւ. որպէս զի թէ՛ իրենք և թէ՛ քնքոյշ խօսեցեալները չշոքեն կամ չմրսեն։ Միջին դասակարգը զերծ է յիշեալ երկու պակասութիւններից ևս։

Պատահում է Մկրտիչին. վերջին դասակարգի մէջ—կնքահայրը նախապէս մկրտուած է կամիր ջրով. և ինչ պիտի լինի նորա տուած երաշխաւորութիւնը մկրտելի երեխայի հաւատոյ, յուսոյ և սիրոյ դաւանութեան մասին։ Առաջին դասակարգը սրանից

զերծ է. բայց նորա կնքահայրն էլ կամ հայերէն չըգիտէ և կամ երեխայ է հասակաւ. և որ կարի ցաւալին է՝ այս դասակարը սովորութիւն է արել իրեն՝ պահանջել—որ մկրտութիւնը տանը կատարուի. պատճառաբանելով, որ շատ անգամ սուտ է լինում, թէ երեխան տկար է. իսկ տանը մկրտութեան ժամին և՛ ծխում են և՛ խօսում. որ անպատեհ է խորհրդի սրբութեանն ու վեհութեանը: Միջին դասակարգը թէև սրանից զերծ է, բայց ոչ բոլորովին:

Պատահում է գերեզմանօրհնէք. վերջին դասակարգի յարաբերութիւնն ու վարմունքը այս հանգամանքում քան զչափն զայթակղեցուցիչ է. նա կանգնած իւր մեռեալի շիրմի մօտ՝ հրաւիրում է քահանային հեռուից անպատշաճ ու տգեղ աղաղակով. և երբ ժողովրդից մէկը քահանային առաջնորդում է դէպի իւր հարազատի շիրիմը օրհնել տալու՝ նա ևս հրաւիրում է զբաղուած քահանային. մերժման դէպքում բաց է անում բերանը և է՛լ ձեռնադրող, է՛լ ընտանիք, է՛լ հաւատ՝... և այլն և այլն. անխնայ հայհոյում և աններելի յիշոցներով անուանարկում է զբաղուած քահանային. և այդ անում է նա կանգնած իւր մեռեալի շիրմի մօտ, որ եկել է օրհնել տալու և նորա հոգին յիշելու: Այս զայթակղեցուցիչ և վրդովիչ պակասութիւնից զերծ են առաջին և միջին դասակարգերը:

Կառարկեն թերևս—թէ նոքա զերծ են, որովհետև նոցա տուած գերեզմանօրհնէքի տուրքը անհամեմատ շատ է. իսկ վերջին դասակարգի տուածը՝ սակաւ: Առհասարակ վերցրած՝ սխալ է, որովհետև շատ անգամ քահանային յայտնի էլ չէ տալիք տուրքի քա-

նակը, բայց ի մասնաւորի՝ ճշմարիտ է որ կան ոմանք մեզանից, որ 'ի վերջին առարկութիւնն հային։ Բայց բացառութիւններին չէ պատկանում մեր նկատողութիւնը։

Այս՝ առհասարակ յարաբերութեանց նկատմամբ. այժմ խօսենք քահանայի և ժողովրդի նիւթական յարաբերութեանց մասին։

Եւ նախ մտնենք Եկեղեցի։

Բազմաթիւ գերդաստանի հայր՝ քահանան, խաչանիշ օրհնութեամբ թողնելով տանը իւր ընտանիքն ու որդիքը, աղօթքը բերանն առած՝ առաւօտեան հինգ կամ վեց ժամին դիմում է եկեղեցի, որպէս զի աղօթէ դեռ ևս անկողնում քնած, կամ արթուն և իրենց արհեստին ու մշակութեանը շտապող, կամ 'ի ծովու և 'ի ցամաքի ճանապարհորդող, կամ հիւանդ, բանտարկեալ և հոգեպէս ու մարմնապէս վշտացած վաստակաւոր ժողովրդի համար. որպէս զի Ամենախնամն Աստուած ամենքին էլ հասնէ իւր բիւրատեսակ խնամքներով. և ահա նոյն քահանան, ըստ Առաքելական պատուիրանի. «Եթէ մեք 'ի ձեզ զհոգևորն սերմանեցաք, մե՞ծ ինչ իցէ եթէ 'ի ձենջ զմարմնաւորն հնձեսցուք». օրապահիկ տուրքի թեփշին ձեռքն առած «Փառք ի բարձմանն» և Աշխարհգալոցին» կամ «Գոհութեանը» սկսում է շրջել հաւատացեալների մէջ իւր գերդաստանի համար հացագին հաւաքելու. բայց եկեղեցին դատարկ է հաւատացեալներից. եղածներն էլ կամ ոչինչ չեն ձգում և կամ թողնում են եկեղեցին և շտապում են դուրս գնալ, որովհետև նոքա գիտեն գանձանակաշրջման ժամանակը, երեսը ամօթից կարմրած խեղճ քահանան աւարտելով ժո-

ղովարարական դէրը՝ վերադառնում է իւր տեղը շատ աննպաստ արդիւնքով—առ առաւելն ռուբլուն չհասած կոպէկներ է հաւաքել, որը պիտի կազմէ երեք, չորս կամ հինգ քահանայի հացագին։ Կարմրում է, ասացի, ժողովարար քահանայի երեսը. ինչո՞ւ, որովհետև խեղճ քահանան զգում է—որ ժողովուրդը տըրտնջալով ու դժգոհելով է տալիս այդ տուրքը, պատճառաբանելով՝ թէ գանձանակի շրջեցումը խանգարում է նոցա ունկնդրութիւնը և առհասարակ՝ շփոթում է Աստուածպաշտութիւնը։ Եւ քանի՜ քանի՜ անգամ ինքնաբերաբար դուրս են եկել ժողովրդի բերանից. «Երանի՜ վերջանար այս տգեղ սովորութիւնը և ռոճիկ սահմանուէր քահանայից համար և այլն և այլն» այս իրաւացի խօսքերը։

Մտնենք տուն։

Պատահում է Պսակ։ Պսակատէր ժողովուրդը հարսանեաց պատրաստութիւնը շատ առատաբար է տեսնել. ոչինչ պակաս չէ. աւելի է քան թէ պակաս, շռայլ է քան թէ չափաւոր։ Այստեղ քահանան ժամերով նստում է միայնակ. ինչո՞ւ միայնակ, որովհետև եթէ պսակատէրը առաջին դասակարգին է պատկանում՝ պարերն ու թղթախաղերը չեն թողնում ոչ ոքին մօտենալ և ընկերել քահանային. Թէ պսակատէրը վերջին դասակարգին է պատկանում՝ նրա տանն էլ քահանան դատապարտուած է միայնութեան, որովհետև պարերը, թղթախաղն ու ղումարը զբաղեցրել են ամենքին. Թէ պսակատէրը միջին դասակարգին է պատկանում՝ այն ժամանակ թէև դարձեալ կան նոյն յիշեալ զբաղմունքը՝ բայց և այնպէս և՛ քահանային կան յիշողներ ու զբաղեցնողներ։ Եւ

այսպէս միայնութեան դատապարտուած քահանան, որի ընկերն ու խօսակիցը՝ մտածութիւնն է, կարծես փշերի վերայ է նստել և րոպէներ է համարում, թէ երբ պէտքէ աւարտէ իւր հոգևոր պարտքը որ հանգիստ առնու իւր գերդաստան մէջ։ Այսպէս սպասելով՝ հասնում է վերջապէս ցանկալի ժամը, և օրհնելով խօսեցեալների հալաւն ու նշանը՝ տանում է եկեղեցի. ուր Պսակադրութեան խորհուրդը աւարտելուց յետոյ տուն է բերում նորապսակներին. վերջին օրհնութիւնն ևս տալիս է. այնուհետև սկսում են շնորհաւորէքներ ու բաւականութիւնք. իսկ քահանան մոռացուած է իսպառ, որովհետև աւարտեցաւ կարևորը։ Այժմ գիշերուայ չորս, հինգ ժամերով ընտանիքը միայնակ թողնող քահանան կանգնած է, չգիտէ գնա՞յ՝ թէ համարձակուի ծպտուն հանել իւր վարձուց մասին։ Ի՞նչ դրութիւն...։ Վերջապէս գտնւում են պարտաճանաչ ոմանք, որոնք արժանաւոր վարձատրութեամբ փոխարինում են իրենց քահանայի գիշերային չարչարանքն ու անհանգստութիւնը. իսկ ոմանք ապառիկ թողնելով՝ ստիպում են քահանային, ողորմութեան քսակն առած, շաբաթներով ու ամիսներով թափառել իրենց ետևից և իսպառ անամօթանալ մի քանի արծաթ վարձուց համար. իսկ ոմանք տարիներով ուշացնում են վարձուց տուչութիւնը և դնում է 'ի յաւիտենական մոռացօնս։

Պատահում է Ննջեցեալ։ Երեք օր շարունակ քահանան թողած իւր գործերը՝ ննջեցելոց տէրերի մէջ պիտի շրջէ. իսկ թաղման օրը. առաւօտեան ինն ժամից սկսեալ մինչև երկու կամ չորս ժամը զկնի ճաշուն, իւր տանից բացակայ՝ ժողովրդի տանը պի-

տի լինի. իսկ յուղարկաւորող քահանայք երկու, երեք ամբիծքներին ներկայ լինելուց յետոյ, թաղման օրը ինն ժամից մինչև երկու ժամը, հինգ ժամ գործերը թողած՝ ննջեցելոյ դին պիտի պատուեն թէ տուն և թէ անձրև, շուրջառները ծածկած՝ տանից եկեղեցի, եկեղեցուց հանգստարան, անդադար երգելով, քըր- տնքից ու թողից խեղդուելով, անձրևից ու քամուց ծեծուելով, ցեխից աղտոտուելով՝ ննջեցելոյ դագա- ղի առաջից պիտի գնան գլխաբաց մինչև գերեզմա- նատուն։ Քանի՞ ժամուայ և ծրգլիսի չարչարանք, բայց ի՞նչ վարձատրութիւն—երեքից մինչև, առ ա- ռաւելն, չորս կամ հինգ արծաթ, այս ևս ապահով և հարուստ ժողովրդից. իսկ անապահով և հասարակ ժողովրդից՝ առ առաւելն մէկ կամ երկու արծաթ և կամ ոչինչ։ Ծխատէր քահանային պարտաճանաչ ժո- ղովուրդը արժանաւոր վարձատրութեամբ մխիթա- րում է, իսկ անպարտաճանաչների վարմունքը նոյնն է՝ որ ինչ Պսակադրութեան հանգամանքում։

Այս երեքը—Ցանձանանկադրամը, Պանկադրամը եւ Թաղմանյան, որ քահանայի վիճակը փոքր 'ի շա- տէ ապահովող արդիւնքներն են, այս չափով և այս ձևով են տրուում՝ ի՞նչ ասենք երկրորդական արդիւնք- ների մասին. ոչինչ չենք կարող ասել, բայց եթէ համակերպուել Ցիսուսի խորհրդաւոր խօսքերին թէ. «Եթէ ընդ փայտ դալար զայս առնեն. ընդ չորն զի՞նչ լինիցի»։ Եթէ արդիւնաւոր և նշանաւոր օրինակա- տարութիւնները այս չափով են վարձատրուում քահա- նային՝ ապարդիւն և աննշան օրինակատարութիւննե- րից ի՞նչ ապասէ խեղճ քարանան։

Ահա այս և այսպիսի հանգամանքները, որ վերը

յիշուեցան, պատճառ են դառնում քահանայի և ժողովրդի մէջ պժգալի, արհամարհական, անհամակիր և ատելի յարաբերութեանց առաջանալուն։

Ժողովրդի պահանջը քահանայից, առ հասարակ, խիստ է և չափազանց. իսկ ըստ պահանջին չկայ համապատասխան վարձատրութիւն. և այս հանգամանքը շատ յաճախ է կրկնւում ժողովրդի ու քահանայի փոխադարձ յարաբերութեանց մէջ. եթէ ըստ պահանջին վարձատրութիւն լինէր՝ շատ չարիքների առաջն առնուած կլինէր։

Յիշեալ մէջ բերած տխուր երևոյթները, որոնք պատճառ են դառնում ժողովրդի և քահանայի անհամակիր յարաբերութեանց, էին ժողովրդի կողմից։

---

## VII.

Քահանաներիս պարտազանցութիւնները՝ առաջնորդող պատճառներով.

Պարտք է մեզ սեպում՝ յիշել նոյնպիսի տխուր երևոյթներ նաև քահանաներիս կողմից։

Արդ՝ ժողովրդի մշտական գանգատները կայանում են նրանում—թէ արժանաւոր քահանաներ չունենք, քահանաների ընթացքը, վարմունքը անհարգ են ու անհանոն են ո՛չ քահանայավայել, քահանայք միմեանց հետ ընկերական յարաբերութիւն չունեն. այլ թշնամական է նոցա յարաբերութիւնը

—Նոքա միմեանց վերայ բամբասում են, միմեանց չարախօսում են, մատնում են թէ՛ ժողովրդի եւ թէ՛ Հոգեւոր իշխանութեան առաջ, ծխայափշտակութեամբ են պարապած, կողմնակի տգեղ զբաղմունքներ ունին՝ որոնք բնաւ պատուաբեր չեն իրենց կոչման վսեմութեանը... և այլն և այլն։

Ժողովրդի գանգատները, մեր—քահանաներիս ՚նկատմամբ, ճշմարիտ են և արդարացի. բացառութիւնները մէկ կողմ թողնելով։ Եթէ ժողովրդի պակասութիւնը ՚ի նկատ առնուեցաւ՝ ինչու մերը լռութեամբ անցնենք ու մեր սուրբ և բարձր կոչումը արատաւորող թերութիւններն ևս չնկատենք։

Եթէ ժողովրդին լսենք ու հաւատանք՝ առ ժամ մի պիտի համոզուենք—նախ՝ որ արժանաւոր քահանաներ չունենալու պատճառը՝ է Հոգևոր իշխանութիւնը. բայց այս մասին կխօսենք իւր տեղում. երկրորդ՝ որ քահանային իրանց տանից հեռու պահելու, իրանց չընկերացնելու, իրենց հասարակութեան մէջ չընդունելու, մինչև իսկ եկեղեցի չյաճախելու պատճառը մենք քահանաներս ենք մեր անկարգ ու անկանոն ընթացքով, անպատեհ խօսքով ու վարմունքով, միմեանց հետ ունեցած մեր տգեղ յարաբերութիւններով և շատ ա...երով։

Ես թէև ժողովրդի առ քահանայս ցոյց տուած անհամակիր վարմանց նկատմամբ ըստ կարելւոյն տուի իմ բացատրութիւնը, մեղադրելով ժողովրդին՝ սակայն մեր մասին ևս լռելն անկարելի է. և եթէ ես լռեմ՝ քարինքն կաղաղակեն ժողովրդի գանգատների, ըստ մասին, արդարացի լինելու նկատմամբ։

Ու եթէ ընդունենք՝ թէ ժողովրդի և քահանա-

յից մէջ եղած անհամակիր յարաբերութեանց առաջ-նորդող պատճառները մեզ—քահանաներիս է վերա-գրելի՝ այնու ամենայնիւ չէ կարելի ուրանալ՝ որ նոյնքան էլ ժողովրդին է վերագրելի և ժողովրդով՝ Հոգևոր իշխանաւորներին։

Դոյնպիսի յարաբերութեանց ակզբնապատճառն է ժողովուրդը՝ որ քահանայ է պահանջում և պիտի տրուի նորան անպատճառ. երկրորդ պատճառն է քահանան՝ որ ներս է սպրդում եկեղեցի իբրև ստո-րին սպասաւոր և բազմամեայ պաշտօնավարութիւ-նից յետոյ՝ դիմում է 'ի քահանայութիւն, յետևից ժո-ղովրդի մի լէգէօն քաշ տալով 'ի միջնորդութիւն. երրորդ պատճառն է Հոգևոր իշխանութիւնը՝ որ գիջանելով ժողովրդի միջնորդութեանը և քահանայի կարևորութիւեանը՝ տալիս է ժողովրդին քահանայ։

Այդ ժողովուրդը, որ քահանայ է պահանջում իրան հովուելու, իւր հոգևոր պէտքերը լցուցանելու՝ ինչու իւր ընտանիքի մանուկ անդամների—երեխա-ների կրօնի եւ մայրենի լեզուի դաստիարակութիւնը յանձնում է աշխարհականին եւ ո՛չ թէ քահա-նային։

Պատասխանում է ժողովուրդը—որովհետև նախ՝ որ քահանայք, մեծ մասամբ, պատշաճաւոր գիտու-թիւն չեն ունենում Կրօնի և Մայրենի լեզուի. երկ-րորդ՝ որ նրանց իբար հետ ունեցած յարաբերու-թիւնները պախարակելի են. երրորդ, որ լաւ անուան ու վարկի տէր չեն և չորրորդ, ցաւ 'ի սիրտ պէտք է ասել—որ դպրոցներում մեր որդիքը իրանց ընկերնե-րից շատ աննպաստ համբաւներ են ստանում այս ու այն քահանայի պարտազանցութեանց մասին, մինչև

*իսկ կրօնուսոյցների․ էլ չենք յիշում ծածկեալ ախտագործութիւնք․ որոնց մասին, ՚ի հարկէ, ոչինչ չէ կարող իմանալ դպրոցական սանը։ Այս այսպէս լինելուց յետոյ՝ ո՞ր արդար իրաւունքով մենք կարող ենք վստահանալ մեր մանուկ և անփորձ երեխաներին հաւատալ նոցա հեզինակութեանն ու կրթութեանը։*

*Ուրեմն ժողովուրդը հասկանալով և իմանալով քահանայի յայտնի և ծածուկ, անկարգ ու անպատիւ, անկանոն ու անպատեհ կենցաղավարութիւնը՝ բնական է—որ դրանից յետոյ չէ ընդունելու քահանային իւր ընտանիքի մէջ իբրև հայր կամ բարեկամ և կամ որդւոց դաստիարակ։*

*Եւ ո՞վ է ժողովրդին հասկացնողը, յայտնողը քահանայի կատարած զանցառութիւնքը՝ Ժողովո՞ւրդը․ գուցէ թէ ժողովուրդը, բայց շատ սակաւ․ իսկ ո՞վ գլխաւորապէս՝ ·գլխաւորապէս քաՌաՌաՌրա, այս քահանաներս․ իսկ ի՞նչն է դորա շարժառիթը․ Նախ՝ դիւական հոգին, երկրորդ՝ անապահով վիճակը և դրանից յառաջացած ծխայափշտակութեան տենչը․ և երրորդ անկրթութիւնն ու անդաստիարակութիւնը։*

*Ապրել ցանկացող աղքատը, մանաւանդ եթէ զուրկ է ազնիւ դաստիարակութիւնից, ուրիշ կերպ չէ կարող վարուել, բայց եթէ փծուն ու դարշելի պատրյտներով սողալով, վարկն ու համարումը ոտնահարող գրպարտութիւններով ու բամբասանքներով, քսու և փարիսական ցոյցերով ու վարմունքով, փեշի տակը մտնելով և այլն և այլն։*

*Սրանից յետոյ հարցնում է նոյն ժողովուրդը— ո՞ւմ պարտականութիւնն է հսկելու քահանաների այս օրինակ գայթակղեցուցիչ վարմանց վերայ և չարիքի*

առաջն առնելու. և նոյն ժողովուրդը ինքն իրան է պատասխանում—'ի հարկէ Հոգևոր իշխանութեան պարտականութիւնն է, ինչո՞ւ չէ հսկում, օրինազանցներին չէ պատժում, որ օրինապահները հանդէս գան։ Չէ՞ որ քահանայացուին Քահանայական բարձր կոչման մէջ կոչողն ու հաստատողն է Հոգևոր իշխանաւորը. քահանային՝ նորա կոչման մէջ ցոյց տուած անընդունակութիւնների, զեղծմունքների ու պակասութեանց և՛ պատասխանատուն և՛ դատողը, և՛ պատժողն՝ է՛ նոյն Հոգևոր իշխանաւորը և այլն և այլն։

Ուրեմն ժողովուրդը, քահանայի և ժողովրդի մէջ տիրապետող պժգալի յարաբերութեանց պատճառը վերագրում է Հոգևոր իշխանաւորներին, պնդելով իւր ասածները և շեշտելով՝ թէ Առաջնորդող ձեռք չունենք, կենդրոնացնող ոյժ չունենք և այլն։

Մեր ժողովուրդը սովոր է առհասարակ պահանջող լինել հոգևորականների վերաբերմամբ. նա միշտ նայել է և նայում է Հոգևորականների վերայ այնպէս՝ ինչպէս ստրկատէրերը իրենց ստրուկների վերայ. այս մասին առարկութիւն եղաւ և բաւական թող համարուի. այժմ տեսնենք թէ որքան իրաւացի են ժողովրդի, Հոգևոր իշխանաւորների վերայ բարձած, մեղադրանքները։

Ժողովրդի մեղադրանաց և մեղադրական հարցմանցը պատասխանում ենք և մեր հարցմունքներով— առ ժամ ընդունենք թէ ճիշտ է ձեր մեղադրանքը. սակայն եթէ այնքան խիստ է ձեր պահանջը քահանաներից և Հոգևոր իշխանութեանն էք ակնարկում՝ ինչո՞ւ ուրեմն այս կամ այն պարոնի կամ տիրացուի համար չափչփում էք Առաջնորդարանները, Կոնսիս-

չացման, որին և հասան դժբախտաբար. իսկ այժմ ցաւում են ու սգում։

Այս այսպէս լինելուց յետոյ՝ դարձեալ մի հարց ժողովրդին—եթէ գանգատւում է նա՝ թէ անարժաններն են ձեռնադրւում՝ ինչո՞ւ մի անգամ էլ արժանաւորի համար չեկան բարեխօսելու, և եթէ եկան՝ մերժուեցա՞ւ նոցա միջնորդութիւնը. թող պատասխանէ ժողովուրդը։ 'Ի դէպ. ո՞ւր են այդ արժանաւորները. ինչո՞ւ չեն դիմում 'ի Հոգևոր կոչումն. ո՞վ չէ հաւատացած—որ Հոգևոր իշխանութիւնը դրկաբաց կընդունէ այդպիսի արժանաւորներին. բայց քանի չկան այդպիսիք՝ ի՞նչ է մնում Հոգևոր իշխանաւորներին. փակե՞լ եկեղեցիները, չտա՞լ ժողովրդին քահանաներ. լուանա՞լ ձեռքերը և՛ եկեղեցուց և՛ Քահանայից և առհասարակ Աստուածպաշտութիւնից։ Այս ի՞նչ յոռետեսութիւն ժողովրդի. այս ի՞նչ անանկութիւն ուղղախոհութեան։ Եկեղեցին և Հոգևորականութիւնը մեր խնկելի նախնիք այդպէս թեթևամի՞տ կշռեցին՝ թէ կեանքի չափով և արեան գնով յոխորտ ալիքներից փրծուցին ու մեզ հասուցին. մեզ՝ որ մանանեխի հատիկի չափ գնահատել չգիտենք նախնեաց մեզ թողած այս սուրբ նուիրապետութիւնք։

Մեզ՝ էլ ոչինչ չէ մնում ասել բայց եթէ ի յայտ ածել այն՝ ինչ որ իւրաքանչիւրիս սիրտն է զգում—թէ ժողովրդի սեպուհ և նուիրական պարտականութիւնն է մեծարել Հոգևոր իշխանութեան իրաւունքը և չձգտել 'ի բռնաբարութիւն այդ իրաւանց. և փոխանակ նեղանալու՝ որ միջնորդութիւնը չը յարգուեցաւ, իւր խնդիրքը մերժուեցաւ՝ ընդհակառակն պարտաւոր է ջատագովել Հոգևոր իշխանաւորի աւանդա-

պահական հոգին և առ պայծառութիւն եկեղեցւոյ նորա ունեցած նախանձախնդրութիւնը. և ձեռք ձեռքի տուած գործէ իւր Հոգևոր իշխանաւորի հետ. որովհետև պատասխանատուութիւնը, ինչպէս և ինքը ժողովուրդն է ասում, լիովին ընկնում է Հոգևոր իշխանութեան վերայ, որոյ տեսչութիւնն է յանձնուած Քահանայական դասի պաշտօնէութիւնը։ Այս բոլոր տեսութիւնից հետևում է այն՝ որ բուռն ոտնձգութիւն և թևակոխումն Հոգևոր իշխանութեան իրաւանց սահմանը ժողովրդի կողմից՝ է փութացնել Հոգևոր իշխանութեան իրաւանց անկումը։

Բայց ո՞վ է ջանադիր առ բարելաւութիւնն. ո՛չ ոք. ամեն ոք իրանով է զբաղուած. ուրեմն երբ չկայ ջանադրութիւն, չկայ աշխատանք՝ չի՛ լինի և արժանաւոր պտուղ կամ արդիւնք։

Շատ երկար կարելի էր խօսել քահանայի և ժողովրդի մէջ բռնակալող վնասակար և կորստաբեր յարաբերութեանց նկատմամբ. բայց յուսալով որ ընթերցող բանիմաց մասը արդէն իսկ քաջ գիտէ այդ բոլորը՝ ես յիշածներովս բաւականանալով հանգերձ՝ կկամենայի մի վերջին եզրակացութեամբ կնքել Ա. բաժնի վերաբերմամբ արած նկատողութիւններս և յայտնած կարծիքներս—և նախ՝ քահանայի և ժողովրդի աննախանձելի յարաբերութեանց պատճառն է ժողովուրդը. որը որքան էլ նկատած լինի Քահանայական դասակարգի մէջ եղած պատահական կամ պարբերական թերութիւնք և պարտազանցութիւնք՝ այնուամենայնիւ պիտի մօտաւորէ իրան նոյն քահանային. որովհետև մօտաւորելուց օգուտ կայ. իսկ խորշեցնելու վնասը անկասկած է և անխուսափելի.

ինչպէս առիթ ունեցայ ցոյց տալ և ոչ թէ աւելորդ համարել մօտաւորելը զգուշացնելը. պատճառաբանելով թէ «Ինչ իմ գործն է նստել, մտածել քահանայից վիճակի բարւոքման մասին: Էհ, մի մկրտութիւն է. կգայ, կմկրտէ ու կերթայ, պսակողին կպսակէ, մեռելին կթաղի. ինչ իմ բանն է դրանց համար մտածելը, գլուխ ցաւացնելը. առանց դրան էլ հազար ու մի մտածելու բան ունիմ. Թող մտածեն իրենք և իրենց Հոգևոր իշխանաւորները»: Բաւական չէ որ այս կերպ հրաժարւում է ժողովուրդը քահանային մօտաւորաւելուց, դեռ մի առանձին բաւականութեամբ էլ քահանայի յետևից հազար ու մի արդարացի և անարդար գանգատներ սրան—նորան պատմել չի զլանում և մինչև անգամ լրագրութեան նիւթ է շինում և հրապարակի վերայ դնելով՝ ջանահնար է լինում, ոչ միայն իւր ակնարկած քահանային, այլ 'ի դէմս նորա՝ ամբողջ Քահանայական դասի անունն ու կոչումն արատաւորել: Սա սրբապղծութիւն է ըստ իս: Բայց ահա թէ ինչ պէտք է անէր սրտացաւ ժողովուրդը—նա կամ պիտի կանչէր իւր մօտ քահանային կամ ինքը պիտի նեղութիւն կրէր գնալ նորա մօտ և զգուշացնէր նորան. և որ գլխաւորն է՝ մտածէր և գտնէր միջոցներ քահանայից վիճակը բարւոքելու: Բայց նա այս չէ անում, այլ անտարբեր և սառն է վերաբերւում դէպի իւր պարտականութիւնը. որը ոչ միայն իրաւացի չէ, այլ մինչև անգամ դատապարտելի է. որովհետև անցան այն երջանիկ ժամանակները՝ երբ կրօնաւորներն էին ժողովրդի առաջնորդները՝ թէ ուսման, թէ կրթութեան ու զարգացման և թէ բարոյական կենցաղավարու-

թեան նկատմամբ։ Այժմ արտասուքն աչքերիս և խոր հառաչները սրտերիս՝ հակառակ պատկերներն ենք տեսնում. և հէնց այդ է պատճառը՝ որ ժողովուրդը աւելի ևս պարտաւորէ մօտենալ իւր հոգևոր հայրերին, որովհետև նա շատ լաւ գիտէ—որ ինքը առանց Հոգևորականի և Հոգևորականը առանց իրան չեն կարող ապրել. և երկուսի միմեանց արած փոխադարձ օգնութիւնը անհրաժեշտ է երկուսի գոյութեան կանգուն մնալուն։

Երկրորդ՝ քահանայի և ժողովրդի աննախանձելի յարաբերութվանց պատճառն է ինքը քահանան. որ կարծելով՝ թէ իւր լաբիրինթի խորշերը չէ կարող թափանցել ժողովրդի աչքը ու դիտել իւր ծածուկները՝ սկսում է, և եթէ սկսել է, շարունակում է իւր անկարգ, անպատեհ ճանապարհներն ու կեանքը, որը արդէն յայտնի է ժողովրդին։ Քահանան ևս ինքը իւր կողմից պիտի մտածէ—թէ Քահանայութիւնը որքան երկրային՝ նոյնքան և երկնային պաշտօն է. ուրեմն և ինքը համապատասխան պիտի կացուցանէ իւր անձը այդ հրեշտակային վսեմ պաշտօնին. հակառակ դէպքում ինքը քահանայ չէ. այլ քահանայական հանդերձների մէջ և այդ սուրբ անուան տակ թափառական մի շրջմոլիկ, որ շրջում է իւր որովայնը պաշտելու համար միայն։

Երրորդ՝ քահանայի և ժողովրդի աննախանձելի յարաբերութեանց պատճառն է և՛ Հոգևոր իշխանաւորը. որը գիջանելով երբեմն պատուական և ազնիւ ազգայինների միջնորդութեանը, որպէս և այն մեծ կարիքին—որ ժողովրդին քահանայ է հարկաւոր՝ ձեռնադրում է 'ի քահանայ առաջարկեալ ընտրեալին.

թէև ինքը Հոգևոր իշխանաւորն իսկ համոզուած է— որ առաջարկեալ ընծայացուն չունի համապատասխան պատրաստութիւն առ կոչումն Քահանայութեան՝ թէ ըստ ուսման, թէ ըստ բարուց և թէ մանաւանդ ըստ հաւատոյ. և սակայն ձեռնադրում է. թէ ինչ կշռադատութիւններով է առաջնորդւում՝ այդ իրան Հոգևոր իշխանաւորին է յայտնի, քանի որ և իւր իրաւանցն է վերապահուած իւր պատասխանատուութեամբ հանդերձ։ Բայց թէ այսպէս, թէ այնպէս՝ ներկայ հանգամանքում թւում է թէ այլապէս չէր էլ կարելի վարուել, որովհետև հարկ զօրէնս լուծանեն. այսինքն գիւղը քահանայ չունի, ուսումնականը խուսափում է քահանայանալուց, և եթէ գտնւում է արժանաւորներից կամեցողը մէկը՝ այն ևս քաղաքում քահանայագործելու նպատակաւ և ո՛չ բնաւ գիւղում. ուրեմն գիւղերը մնան առանց քահանաների. սա ի՞նչ անիրագործելի երևակայութիւն է. գիւղացւոց երեխաները չմկրտուի՞ն, պսակւողները՝ չպսակուի՞ն, մեռեալները՝ չթաղուի՞ն, ապաշխարողները՝ չխոստովանուին և չհաղորդուի՞ն, տները՝ չօրհնուի՞ն, գերեզմանները՝ չօրհնուի՞ն, կալերը, արմտիքը՝ չօրհնուի՞ն. մինչև ե՞րբ. մինչև որ կրթեալ և ուսումնական քահանայացու ստեղծուի...։ Ա՛յլ է 'ի հարկէ քաղաքի քահանաների մասին եղած խորհրդածութիւնը. ա՛յլ է նա և քահանաների տեղափոխութեան խնդիրը։ Արդ՝ եթէ խստապահանջ ժողովուրդը, որ իրան ամենայնիւ և յամենայնի անհամեմատ բարձր է համարում հոգևորականներից՝ ինչո՞ւ մինչև այժմ գիւղական քահանաների դրութիւնը բարւոքելու միջոցների ձեռք չզարկեց. բայց էլ ինչո՞ւ ենք հեռու գնում, քանի որ

քաղաքի քահանաների վիճակի բարւոքման մասին էլ ոչինչ չէ արել։ Սրանից հետեւացնում ենք մի տխուր փաստ—որ պահանջելը աւելի հեշտ է՝ քան թէ կատարելը. և որովհետև այսօր պահանջողը ժողովուրդն է, իսկ կատարողը՝ Հոգևորականը, ուրեմն ժողովրդի հայեցակէտով մեղաւոր է Հոգևորականը։ Սա սխալ տրամաբանութիւն է ժողովրդի կողմից, որովհետև կարելին միայն պէտքէ պահանջել և պահանջելուց առաջ՝ պահանջի իրագործման դժուարութիւնները, մինչև իսկ անկարելիութիւնն 'ի նկատ պիտի առնուլին։ Եւ եթէ պահանջներն այս կարգով ու պայմանով ընթանային՝ այլ ևս պահանջներ չէին լինիլ. այլ այդ պահանջները կփոխուէին 'ի խորհրդակցութիւն։ Ահա, հէնց այդ խորհրդակցութիւնն է, որ տեղի ունենալով ժողովրդի և հոգևորականի մէջ՝ արդիւնաւոր հետևանքի կհասնէինք և էլ տեղիք չէր տրուի անբաւականութեանց և ոչ մի կողմից։

Ուրեմն Քահանայի և ժողովրդի աննախանձելի յարաբերութիւնները բարւոքելու համար անհրաժեշտ է ժողովրդի մօտաւորութիւնը իւր քահանաներին, կամ աւելի ճիշտն ասած՝ *Քահանայական եւ Ծխական Միաւորող Ժողովներ* ունենալ, որի մասին կխօսենք իւր տեղում։

---

## Բ. Բ ա ժ ի ն.

### Քահանայացուի ընտրութեան ձևի և քահանայ դառնալու պահանջների բարեփոխման միջոցներ։

Քահանայի և ժողովրդի մէջ տիրող աննախանձելի յարաբերութեանց պատճառներից մէկն էլ է քահանայացուի ընտրութեան ձևը և քահանայանալու պահանջները. որոնք նոյնպէս կարօտ են բարեփոխման։

Նախընթացներում տեսանք մենք Քահանայի վսեմ կոչումը և նորա բարձր նշանակութիւնը. տեսանք նոյնպէս քահանայի անհամապատասխան լինելը իւր այդ վսեմ կոչման. և իբրև հետևութիւն այս ամենի՝ արինք մեր եզրկացութիւնը իբրև պատճառ ժողովրդի և քահանայի ներկայ աննախանձելի յարաբերութեանց։

Այժմ պէտքէ տեսնուի—թէ որքան անհամապատասխան են ցարդ մեզ եկած—հասած քահանայացուի ընտրութեան ձևը և քահանայանալու պահանջները, որոնք գրեթէ աղաւաղուած են մեր պաշտելի նախնեաց սահմանադրած ձևին ու պահանջներին. և ուրեմն ո՞րպէս պէտքէ բարեփոխել՝ համակերպուելով նախնականին, միաժամանակ աչքից բաց չթողնելով նաև ներկայ պահանջներն ու հանգամանքները. որպէս զի վերջ տրուի ընդ միշտ քահանայի և ժողո-

վրդի մէջ տիրող ներկայ աննախանձելի և ոչ ցանկալի յարաբերութեանց։

Անկասկածելի ճշմարտութիւն է՝ որ երբ ժողովրդին կտրուի իրենց անձնաւորութիւնը ճանաչող, իրենց կոչման և պաշտօնի վսեմութիւնը գնահատող, իրենց մարդկային և Քրիստոնէական պարտիքը հասկացող, ամեն մի դիպուածում և քայլափոխում իրենց խղճի ազդարար ձայնին լսող և հպատակող, իրենց իւրաքանչիւր գործին և խօսքին ծանրակշիռ հաշիւ տուող, և որ գլխաւորն է՝ այդ երկնային պաշտօնին և երկրաւոր ճշմարիտ գործին ամուր և անդրդուելի հաւատով յարուած արժանաւոր և համապատասխան Պաշտօնակատար և գործող Քահանաներ՝ դէթ այն ժամանակ ժողովուրդը թերևս ինքնին ուղղէ իւր անարգ յարաբերութիւնները դէպի իւր արժանաւոր քահանաները։

Բայց ինչ միջոցներով ձեռք բերուին այդ օրինակելի անհատները, որպէս զի այնուհետև եկեղեցին չկորցնէ իւր պայծառութիւնը յաչս հաւատացեալ աղօթաւորաց. իսկ ժողովուրդը գոհ և բաւական մնալով իւր քահանաներից՝ կատարելապէս համակիր միաւորութեամբ անխզելի յօդաւորուի իւր եկեղեցուն և Հոգևորականութեանը. որ է ցանկալի նպատակը ամեն մի բանիմաց, հեռատես և շրջանկատ հայ մարդու. և այն ժամանակ ճշմարիտ Քրիստոնէութիւնն ու Աստուածպաշտութիւնը դարձեալ կընթանան ջերմեռանդ հաւատոյ շաւիղներով. և ոչ նոյն գայթակղութեամբ՝ որպէս ներկայումս։

Ահա խնդրի էական կողմը։

Քահանայացուի ընտրութեան ձևի և քահանայա-

նալու պահանջների բարեփոխման միջոցների մասին հետեւեալ դիմումները պիտի լինեն.

Նախ՝ եկեղեցւոյ սորին պաշտօնէութեան մէջ մտնել ցանկացող դպրացուները խնդրագրով դիմում են Առաջնորդներին։

Երկրորդ՝ Առաջնորդները յիշեալ դպրացուների խնդրագրերը մակագրութեամբ ուղարկում են Կոնսիստորներին կամ Հոգեւոր Կառավարութեանց։

Երրորդ՝ վերջիններս օրագրական եզրակացութեան եւ խնդրագրերի պատճէնները իրենց հրամանագրութեան հետ ուղարկում են Գործադիրներին։

Չորրորդ՝ սոքա ծխականաց ժողովով ընտրում են դպրացու խնդրատուին շտատնի դպիր իրենց եկեղեցւոյ եւ կամ բաց են առում։

Հինգերորդ՝ ծխականաց ժողովի արդիւնքը գործակալները իրենց արձանագրութեամբ եւ յայտարարութեամբ մատուցանում են Կոնսիստորեաներին կամ Հոգեւոր Կառավարութիւններին։

Վեցերորդ՝ Հոգեւոր Կառավարութիւնք՝ Կոնսիստորիաներին. իսկ սոքա՝ Առաջնորդներին։

Եօթներորդ՝ Առաջնորդները առաջադրում են Կոնսիստորեաներին, սոքա՝ Հոգեւոր Կառավարութիւններին եւ այս վերջին երկու Ատենական Հաստատութիւնք հրամանագրում են Գործադիրներին— Ճանաչել յիշեալ խնդրատուին շտատնի դպիր նոյն եկեղեցւոյ, եւ կամ բացասել։

Ութերորդ՝ երկու տարի անուազն եկեղեցում սպասաւորելուց յետոյ սարկաւագացու դպիրները համախօսական եւ պարտ ու պատշաճ թղթերը իրենց խնդրագրերով ներկայացում են Հոգեւոր Կառավա-

րութեանց և սոքա Կոնսիստորիաներին։

Ինններորդ՝ Կոնսիստորիաները այդ բոլոր թղթերը իրենց ենթադրութեամբ ուղարկում են 'ի Սինօդ Սրբոյ Էջմիածնի։

Տասներորդ՝ Սինօդը իւր որոշումը հրամանագրում է Առաջնորդներին կամ Կոնսիստորիաներին ի կատարումն։

Մետասաներորդ՝ Կոնսիստորեաները այդ որոշման հիման վերայ կարգադրում և հրամանադրում են Գործակալներին կամ Հոգևոր Կառավարութիւններին։ Վերջիններս էլ իրենց Գործակալներին։

Երկոտասաներորդ՝ Գործակալները, Սինօդի ու Կոնսիստորիաների և Հոգևոր Կառավարութեանց որոշումը, յայտնում են գրաւոր այն քահանաներին՝ որոց հետ լծակից պիտի լինի սարկաւագացու խնդրատու դպիրը։

Երեքտասաներորդ՝ Քահանայք յիշեալ որոշումները եկեղեցական բեմից ազդարարում են ժողովրդին, որի վերայ պիտի քահանայանայ սարկաւագացու դպիրը, նորա համառօտ կենսագրութիւնը—անունը, հայրանունը, ազգանունը, ուսման և գիտութեան, վարքի ու բարքի վկայագրերը թէ դպրոցական հաստատութիւնից տուած, թէ Կոնսիստորիայից, թէ քահանաներից. և հրաւիրում է ժողովրդին խղճի մտօք վկայել նորա արժանաւորութեան և կամ անարժանութեան մասին 1)։

---

1) Գաղանի քուէարկութեամբ՝ թէ բացարձակ՝ թէ ինչ միջոցով պիտի կատարուի այդ հարցափորձը՝ դա կախուած է ծխական համայնքի որոշումից։

Չորեքտասաներորդ՝ ծխականները և քաղաքի կամ գիւղի համայնքից կողմնակի անձինք ևս դիմում են իրենք կամ պատգամաւորութիւն են ուղարկում 'ի Կոնսիստորն իրենց Նպաստաւոր կամ աննպաստ կարծիքներով, եթէ աննպաստ՝ մերժւում են յիշեալ խնդրատուների խնդիրները յետ անաչառ քննութեան. իսկ եթէ Նպաստաւոր և յընթացս առնուազն ամսօրեայ միջոցի աննպաստ կարծիք յայտնողներ չերևեցան՝ այն ժամանակ—

Հնգետասաներորդ՝ Քահանայք իրենց ազգաբնակութիւնները և հետևանքը մանրամասն արձանագրելով՝ յայտարարութեամբ տալիս են Գործակալներին։

Վեշտասաներորդ՝ գործակալները վերոյիշեալ բոլոր հանգամանքները լիակատար զեկուցագրով յայտարարում են Կոնսիստորիաներին և կամ Հոգևոր Կառավարութիւններին և սոքա Կոնսիստորիաներին։

Եօթնևտասաներորդ՝ Կոնսիստորեաները 'ի Սինօդն. և Սինօդը հրամանագրութեամբ թոյլատրում է ձեռնադրութիւնը։

Քսաներորդ՝ Առաջնորդները զերծ ամենայն պատասխանատւութիւնից, անդորր խղճիւ ամբառնում են խնդրատուներին յաստիճան սարկաւագութեան և յետ առ նուազն՝ երկամեայ սպասաւորութեան և 'ի դէպս կարևորութեան՝ 'ի կարգ Քահանայութեան։ Ի՞նչ կասկած՝ որ այս ձևով ընտրուած և ձեռնադրուած քահանան սիրով և գրկաբաց կընդունուէ իւր ժողովրդից, այստեղ անձ խարտաւիլակների վկայութիւնները կունենան իրենց արժանի կշիռը։

Եւ այպէս՝ դպրանոցի ընթացաւարտ դպրացուն, ինչպէս յիշուեցաւ, եկեղեցական ստորին պաշտօնէու-

*թեան մէջ պիտի սպասաւորէ առնուազն երկու տարի. Նորա հասակը պիտի լի ոչ պակաս քան երկու տարեկանից։ Երկու տարի նա աչալրջութեամբ, հնազանդութեամբ, պարկեշտ վարուք, համեստ կենցաղավարութեամբ, ջերմեռանդօրէն պիտի սպասաւորէ Աստուծոյ Տաճարին և պիտի ջանայ սովորել իւր քահանայից բոլոր օրինակատարութեանց, ծիսից և Սրբազան Արարողութեանց ձևերը. և 'ի ժամ կարևորութեան կառաջարկուի վերոյիշեալ հարցմանը, մինչև որ իւր արժանիքը կամբառնան զինքը սարկաւագական աստիճանին. այդ աստիճանի մէջ երկու տարի սպասաւորելուց յետոյ, 'ի դէպս կարևորութեան, կձեռնադրուի քահանայ և հովիւ ժողովրդի 'ի հասակի առնուազն քսանչորս ամաց* 1)։

*Շատ սխալ է և հակառակ խղճի, որ եղել են դէպքեր, որ ումանք չկամելով վարել դեռ ևս եկեղեցական ստորին պաշտօնէութիւն՝ յանկարծ քահանայ դառնալ են ձգտում։*

*Եւ միթէ կայ այնպիսի մի պաշտօն, ուր ներելի լինին այդ օրինակ քայլաթռիչք։ Ինչո՞ւ քահանայութիւնը պիտի թոյլ տայ այդ բացառութիւնը։*

*Քահանայանալ կամեցող դպրացուն, եթէ դպրոցաւարտ չէ և սակայն քահանայի զգալի կարիք կայ այս ինչ կամ այն ինչ գիւղում՝ յանդէպս նա եկեղեցական ստորին պաշտօնէութեան մէջ պիտի ծառայէ առնուազն չորս տարի, որից յետոյ միայն ենթար-*

---

1) Աւելի բարեյարմար էր քահանայացման տարիքը 27-ից մինչև 30-ը հաշուել։

կուելով վերոյիշեալ հարցափորձից՝ կենթարկուի քըն-նութեան։ Կոնսիստորիայն կնշանակէ քննութեան համար երեք օր. և իւրաքանչիւր քննութեան համար առ առաւելն երեք ժամ. այդ քննութեանը, բացի Կոն-սիստորիայի անդամներից, ներկայ պիտի լինի, և դըպ-րանոցի ուսուցիչներից մի քանիսը ըստ առարկայից։

Քննութիւնը լինելու է հետևեալ առարկաներից—

## Ա. Աստուածագիտութիւն.

Կենսագրութիւն Ջորս Աւետարանիչների. Ժա-մանակագրութիւն և հանգամանք Աւետարանագրու-թեան. Համակերպութիւն և Տարաձայնութիւն Աւե-տարանչաց. Աւետարանի Ուսուցողական, Առակաւոր, Բժշկական, Հրաշագործական և Կենսագրական բա-ժինների հմտութիւն։

## Բ. Ուսումն Սուրբ Գրոց.

Հին և Նոր ուխտի պատմութիւն—Հինը՝ Ջորս Շրջանաբաժնով — Նահապետական, Դատաւորական, Թագաւորական, և Մարգարէական. Կենսագրական Ծանօթութիւն Գլխաւոր Մարգարէների. Նորը՝ Երեք Շրջանաբաժնով—Գործք Առաքելոց, Թուղթք Պօղոսի, Թուղթ Կաթուղիկեայք միւս Առաքելոց. Կենսագրա-կան Ծանօթութիւն երկաղիր Առաքեալների։

## Գ. Քրիստոնէական Վարդապետութիւն.

Աստուածածանօթութիւն 'ի հասարակի. Կրօն—

Այլազգեան և Քրիստոնէական. Բաժանմունք և ծէս-ղեր կրօնի. Խորհուրդք Եկեղեցւոյ. Հաւատ և մա-սունք նորա։

### Դ. Եկեղեցական Պատմութիւն.

Հարևանցի հմտութիւն Առաքելական Յաջորդու-թեանց. Համառօտ տեսութիւն ընդհանուր Եկեղեցա-կան Պատմութեան և Գլխաւոր Գործիչների։ Պատմու-թիւն Եկեղեցւոյս Հայաստանեայց. Քրիստոնէական կրօն 'ի Հայս, Տիեղերական և Ազգային Եկեղեցական ժողովներ. Լիակատար Ծանօթութիւն Ազգային—Եկե-ղեցական գործիչների։

### Ե. Պատմութիւն եւ Աշխարհագրութիւն.

Համառօտ տեսութիւն ընդհանուր Պատմութեան և Աշխարհագրութեան. Հարևանցի Ծանօթութիւն գլ-խաւոր Պատմագիրների և Աշխարհագիրների. Պատ-մութիւն Հայոց և Աշխարհագրութիւն Հայաստանի. Լիակատար Ծանօթութիւն Ազգային Պատմագիրների և Աշխահագիրների։

### Զ. Պատմութիւն Հայ Դպրութեան.

Անգիր Մատենագրութիւն—Գողթան երգեր. Գրա-ւոր Մատենագրութիւն. Հարևանցի Ծանօթութիւն Հին Մատենագրաց Գործոց և Երկոց. Լիակատար Ծանօթութիւն Արդի Մատենագրութեան։

Երրորդ՝ նա, որ տեղական քահանաների և հասարակութեան կողմից բարի վկայութիւն կունենայ գրաւորապէս.

Չորրորդ՝ նա, որ նախընթացում յիշուած բոլոր հարցափորձական ցուցմունքները նպաստաւոր են եղած նորա քահանայանալուն, և

Հինգերորդ՝ նա, որ առ կոչումն քահանայական՝ ունի կատարեալ հաւատ. և ոչ թէ քահանայութիւնը՝ դաւանում է ապրուստի միջոց։

Յիշեալ հինգ յօդուած պահանջներին համապատասխան քահանայացուին Հոգևոր իշխանութիւնը իրաւամբ և ազատ խղճով ձեռնադրում է քահանայ Աստուծոյ և հովիւ ժողովրդի։

Այս կերպ քահանայացող հոգևոր հայրերը առիթ տուած կլինեն քահանայի և ժողովրդի աննախանձելի և լարուած յարաբերութեանց 'ի ցանկալին բարեփոխման։

Սորան ևս իբրև սատարող միջոց՝ պիտի հանդիսանայ երկրորդ էական մասը—այն է՝ քահանայական արդեանց վերացումը և կանոնաւոր ռոճկի հաստատութիւնը, որը կազմում է Գ. բաժնի նիւթը։

Այս է ահա գրքուկիս Ա. Շրջանում Արժանաւոր գործին՝ Արժանաւոր գործող կամ ըստ գործոյն՝ գործավար ասածս. որովհետև՝ որքան վսեմ և մեծ գործ է Քահանայութիւնը՝ նոյնպէս ևս վսեմ և մեծ պիտի լինի գործավարը, որ է քահանան. որպէս զի երկուսն ևս—Քահանայութիւն և Քահանայ համերաշխ լծակցութեամբ ընթանան և գործատէրը, որ է Աստուած, ուրախանայ 'ի փառս։

# Գ. Բաժին.

---

## Քահանայական արդեանց վերացումը և կանոնաւոր ռոճկի հաստատութիւնը։

---

Քահանայի և ժողովրդի աննախանձելի և լարուած յարաբերութեանց բարւոքող միջոցներից մինն ես՝ է Քահանայական արդեանց վերացումը եւ կանոնաւոր ռոճկի հաստատութիւնը Քահանայական եւ ծխական միաւորող ժողովներով։

Մամուլը այդ մասին շատ է գրել, շատ է քարոզել. սակայն ափսոս, որ միշտ նորա քարոզածը մնացել է «Ձայն բարբառոյ յանապատի». թէպէտ, դարձեալ կրկնում եմ նախընթացներում ասածներս, եղած են թոյլ, միակողմանի և որ գլխաւորն է՝ ոչ պարբերաբար։

Քահանայական ռոճկի կարևորութեան մասին ընդարձակուել այստեղ կարիք չկայ, քանի որ արդէն խօսուեցաւ։ Այս բաժնի մէջ ես պիտի դնեմ ժողովրդի հայեցողութեան առաջ քահանայական կանոնաւոր ռոճկի մի ցուցակ կամ կանոնադրութիւն, որը, իբրև մի փորձ, կարող է կամ իրագործուել կամ բա-

ընփոխուել, համակերպուելով ոճկի խնդրին վերաբերեալ բոլոր հանգամանքներին։

Քահանաների վիճակի ապահովութիւնը կանոնաւոր ոճկով՝ անհերքելի է, ինչպէս տեսանք. մնում է հաշտուել դժուարութեանց հետ, որոնք ամենայն քայլափոխում խոչընդոտ պիտի հանդիսանան կանոնաւոր ոճկի հաստատութեան մտքի և գործադրութեանը. որովհետև առաջին փորձը պիտի լինի։ Իսկ աշխատել որևիցէ բացատրութեամբ հերքել խնդրի կարևորութիւնը և խանգարել այդ գեղեցիկ մտքի իրագործումը՝ կնշանակէ ամենևին չկամենալ—կրթուած և բարեբարոյ քահանաներ ունենալ, եկեղեցին իւր պայծառութեան մէջ պահել և ժողովրդի անվերջ տրտունջներին վերջ դնել.

Իսկ այն տարօրինակ միտքը—թէ քահանաները որոշեալ չափով կանոնաւոր ոճիկ ունենալով՝ կթուլանան իրենց պաշտօնավարութեան մէջ՝ նախընթացներում ըստ կարելւոյն հերքուեցաւ. որպէս և այն միտքը—թէ քահանաները պիտի լինին աղքատ և բաւականանան ժողովրդի կամաւոր տուրքով, ինչպէս այդ լինում էր Առաքելական ժամանակներում։ Այդ օրինակ մտքերի հերքման հետ միասին 'ի նկատի պիտի առնուի և այն հանգամանքը—նախ՝ որ ներկայումս ժողովուրդը սովոր է և սպասում է տեսնել իւր քահանային պատուաւոր և վայելուչ կենցաղավարութեամբ. և ըստ մասին, կարծես թէ, պահանջում էլ է, որ այդպէս լինի. և դա շատ բնական է, չէ՞ որ աչքի աշխարհ է այժմ և ոչ սրտի. Առաքելական ժամանակները սրտի աշխարհ էր. դրա համար էլ այլ աշխարհհայեցողութիւն էր. երկրորդ՝ ժողո-

վուրդը դժուարակենցաղ ներկայն պատճառ բերելով՝ զրկում է քահանային իւր տուրքերի մէջ. երրորդ՝ իսկ քահանային հարկաւոր է ընտանեաց անհրաժեշտ կարիքը լցուցանել. մանաւանդ որդւոց կրթութեան համար և՛ հոգալ և ծախսել. առանց որոյ քայլ փոխել ներկայումս անհնար է. բայց այդպէս էր Առաքելական ժամանակներումը. ամեն քայլափոխ իւր վարկանիշն է պահանջում. որպէս ճանապարհորդից՝ անցագիր է պահաջւում իւրաքանչիւր իջևանում։ Ո՞ւմ չէ յայտնի, որ կենսական անհրաժեշտ ծախքերի վերայ այժմ աւելացած են որդւոց ուսման և կրթութեան ծանրագին ծախքերը. ծախքեր՝ որոնք կենսականից աւելի անհրաժեշտութեան մէջ են դրուած և խպառ անխուսափելի են. իսկ այդ անհրաժեշտ ծախքերը կարող են լցուցանել քահանայի ներկայ արդիւնքներն ու եկամուտները 1). և այն՝ անորոշ չափ ու քանակի դատապարտուած։ Եւ ահա—այսպիսի հանդամանքներում ու աններող պարագաների մէջ ապրող քահանային է առաջարկւում ձգել աչքերը Առաքելական ժամանակներին և բաւականանալ ժողովրդի կամաւոր տուրքով։

Ո՜րքան անխորհուրդ միտք և անհեթեթ առաջարկութիւն. թէև ըստ ոմանց՝ դաղափարական. որովհետև Առաքելական է։

---

1) 'Ի բաց առեալ միծատուն բազմածուխ քահանաներից. որոնք կարող են ընդիմախօսել իմ ամբողջ առաջարկին, մի շարք պատճառաբանութիւններ առաջ բերելով. բայց որքան առհաւատչեայ. վաղը գրկիր նորանց իրենց մեծատուն բազմածուխ վիճակից՝ և լեզուն կփոխէն...։

Շատ պարզ է և զանազան ապացոյցների բնաւ անկարօտ այն ճշմարտութիւնը՝ թէ քաղցած ստամոքսը անընդունակ է աշխատանքի և գործելու անդամ՝ ուր թէ արժանաւորապէս գործելու։

. Որքան որ հրէշաւոր երևոյթ էր համարուած քահանաների կանոնաւոր ռոճկի սահմանադրութիւնը մինչև այսօր՝ նոյնքան և աւելի ևս հիմնական, կանոնական և անհրաժեշտ պահանջ է դառնում այսօր նոյնպիսի ռոճկի սահմանադրութիւնը, որը 'ի նկատ առնելով և ես, մինը նոյն քահանաներից, համարձակուեցայ կազմել քահանայական ռոճկի ցուցակը կամ կանոնադրութիւնը. կամելով, որքան կարելի է, դիւրացնել քահանայական ռոճկի երևակայական դժուարութիւնները։

Ահա իմ առաջարկած՝ քահանայական ռոճկի ցուցակը կամ կանոնադրութիւնը, որը թէև ըստ երևոյթին գուցէ անիրագործելու կամ գէթ դժուար երևի, սակայն ժողովրդի պատրաստակամութիւնը և Ազգիս Հայրախնամ Վեհափառ Կաթուղիկոսի բարձր բարեհաճութիւնը կդիւրացնեն երևակայական դժուարութիւնները։

Այս ցուցակը կազմելիս՝ նախապէս խորհրդակցել եմ մի քանի բանիմացների հետ. որոց կարծիքով՝ յարմարագոյն է համարուած ռոճիկների այս ձև հաւաքումը և մատնատրութիւնը, մանաւանդ, որ առիթ է տալիս սա *քահանայական—ծխական միաւորող ժողովների սահմանադրութեան*։

Ոգևորուած բարեմիտ բանիմացների խրախոյսներից՝ ձեռն արկի սորա կազմութեանը. բայց և այնպէս ցանկալի էր, որ աւելի ձեռնտու և յարմարագոյն

*ցուցակներ ևս կազմուէին և առաջարկուէին Ազգիս Վեհափառ Հայրապետի բարեհաճ ընտրութեանը և տնօրէնութեանը։*

*Աւելի ևս բաղձալի էր, որ Ազգիս Վեհափառ Հայրապետը օր առաջ բարեհաճէր հաստատել քահանաների կանոնաւոր ռոճկի խնդիրը և յաւիտենական քաղցր յիշատակ թողնէր Ազգիս համօրէն Հոգևորականաց յիշողութեան մէջ. որովհետև իբրև վերջին կնիք մեր բոլոր ասածների և գրածների՝ դարձեալ կրկնում ենք—Տուէք քահանաներին կանոնաւոր ռոճիկ՝ եւ կունենաք արժանաւոր եւ ուսեալ ու կիրթ քահանաներ. եւ կբարեփոխուի քահանայի եւ ժողովրդի աննախանձելի եւ անհամակիր յարաբերութիւնը։*

*Այս հակիրճը թող ընդարձակեն իմաստասէր բանիմացները. առ երեսս և հարևանցի քննողների հետ գործ չունենք։*

*Սորանով իսկ վերջացնում եմ «Մի պտոյտ Հայ Մամուլի, Հոգեւորականների ու ժողովրդի շուրջը» հարևանցի ակնարկիս Ա. Տրջանը։ Ընթերցողք բնաւ յանդգնութիւն չհամարեն իմ այս հարևանցի ակնարկներս լրագրական թղթակից—յօդուածագրերի և յօդուածների վերաբերմամբ. ո՛չ իսկ խմբագիրք յուզուին ու նեղանան. եթէ ես վստահանում եմ մի քանի ակնարկ ձգել մեր լրագրական հանդէսում մերթ ընդ մերթ երևցած ինչ ինչ զանցառութեանց վերայ՝ այդ անում եմ նախ ստիպեալ 'ի կոչմանէս, որպէս զի Աւետարանական ճշմարտութիւնը խաւարով ծածկուած չմնայ. և երկրորդ՝ դորանով չկամիմ ընաւ, ո՛չ իսկ կարող եմ ուրանալ լրագրութեան արած օգ-*

տակար ծառայութիւնը, ընհակառակն դորանով ես ցոյց եմ տալի, որ թատրոն, լրագրութիւն, ուսումնարան, եկեղեցի և ժողովուրդ պիտի ընթանան աջակցաբար, պիտի գործեն եղբայրաբար՝ միութեան համերաշխ ուժով և մանաւանդ նպաստել Հաւատի գործին՝ որպէս զի օգուտը աներկբայ լինի, որը տակաւին տարակուսանաց երկունքի մէջ գոլով՝ աւելի վնասով է տուժում և որից ամենայն սրբութեան՝ տապալման ու քայքայման չարագուշակ ձայնն է լսւում։

---

## Դ. Բաժին.

### Կանոնադրութիւն Քահանայական ռոճկաց.

---

#### I. Կազմութիւն Ատենի կամ ծխական Հոգաբարձութեան.

---

##### Յօդ. Ա.

Սրբազան Կոնդակաւ Վեհափառ Կաթուղիկոսի Ազգիս՝ կազմի Ատեան Ծխական Հոգաբարձութեան.

բաղկացեալ 'ի քսան և հինգ Ատենակալաց, յԱտենապետէ, 'ի քարտուղարէ և 'ի գանձապահէ։

Յօդ. Բ.

Ատենապետ Ատենին է Սրբազան Առաջնորդն վիճակին. վեցն յԱտենակալաց՝ են արժանաւոր յաա-կութեամբ վրկայեալ Քահանայք, իսկ տասնևութն յԱտենակալաց՝ են արժանայարգ անձինք յաշխարհականաց

## II. Ընտրութիւն Ատենակալաց.

---

Յօդ. Գ.

Աշխարհական Ատենակալք ընտրին գաղտնի քուէարկութեամբ 'ի ծխականաց եկեղեցեաց Հայոց Տփխիսայ 1)։

1) Ծանօթութիւն—Որպէս կանոնադրութիւնս այս, նոյնպէս և տրոհումն ծխոց ըստ դասակարգի և ռոճկաց յարմարեցուցեալ է Թւոց եկեղեցեաց, քահանայից և Հայ ազգաբնակութեան Տփխիս քաղաքի։ Ըստ սմին, բայց ինչ ինչ փոփոխութեամբք, կարեն ղեկավարիլ և այլ Հայաբնակ քաղաքք։

Յօդ. Դ.

Ծխականք յիշեալ եկեղեցեաց ընտրեն 'ի միջոյ

իւրեանց զերկուս անձինս. զմինն՝ յԱնդամութիւն և զմիւսն՝ իբրև զԱնձնափոխանորդ նորին։

Յօդ. Ե.

Ընտրեալ ծխական Հոգաբարձուք, ընդ նախագահութեամբ Թեմակալ Առաջնորդին, ընտրեն զվեց քահանայս յԱնդամութիւն և զերեքն՝ իբրև զանձնափոխանորդս նոցին։

Յօդ. Զ.

Ընտրութիւն ծխական Հոգաբարձուաց հաստատի կոնդակաւ Վեհափառ Կաթուղիկոսի վեցամեայ ժամանակաւ։

III. Նպատակ ծխական Հոգաբարձութեան.

---

Յօդ. Է.

Նպատակ ծխական Հոգաբարձութեանն է—

1) Հաւասար ծխաբաժնութիւն.

2) Սահմանադրութիւն կանոնաւոր ռոճկաց քահանայից.

3) Բարձումն քահանայական ամենատեսակ արդեանց ի Մկրտութենէ, ի Պսակադրութենէ, ի Թաղմանէ, ի Տնօրհնեաց, ի գանձանակաշրջմանէ և յայլոց [1].

1) Ծանօթութիւն—Ո՛չ ենթարկին յօդուածոյս երրորդ պարբերութեան նախ՝ ժամուց

կամ յիշելիք անուանեալ բարեպաշտական տուրքն կամաւոր, զի է դա գրէթէ մասն պատարագին որ 'ի ժամ Աշխարհդալոցին. և երկրորդ՝ տուրք գերեզմանօրհնէից. զի է դա սովորութիւն նուիրական՝ իբրև յիշումն հոգւոյ ննջեցելոյն։

4) Միաւորութիւն Հոգևորական և Աշխարհական դատուց 'ի խորհրդակցութիւն բարեփոխութեանց։

## VI. Հաւասար ծխաբաժանութիւն.

---

### Յօդ. Ը.

Առաջին գործ Ատենի կայանայ 'ի հաւասար բաժանումն ծխոց, ըստ դասակարգի, 'ի մէջ քահանայից [1])

1) Ծանօթութիւն—Ըստ հարևանցի հաշուակալութեան երկի—զի թիւ Հայ ազգաբնակութեան Տփխիսի ըստ գերդաստանց՝ հասանի եօթն հազար ինն հարիւր յիսուն տանց, իսկ թիւ Հայ քահանայից քաղաքիս՝ առ առաւելն՝ յիսուն և երից. հաւասար բաժանմամբ ծխոց՝ առ իւրաքանչիւր քահանայ յատկանայ մի հարիւր յիսուն տուն, երկու հարիւր միուրլի և 10 կոպէկ ռոճկաւ յամին, որպէս երևի 'ի հետևեալ ցուցակէն—

**Ցուց. Թ.**

| Տրոհումն ծխոց ի դաստակերգս: | Թիւ ընչնոց. ծխոց ըստ դաստակերտին: | Թիւ ծխոց ըստ դաստակ. առ մի քահանայ: | Ամսակ. և տարեկան տուրք իւրաքանչ. ծխակ. առ մի քահանայ: | Գումար ամսակ. տրոց ծխականաց կամ ամսական ռոճիկ քահանայի: | Գումար տարեկան տրոց ծխականաց կամ տարեկ. ռոճիկ քահանայի: | Ընդհանուր գումար տրոց ծխականաց կամ ռոճկայն: |
|---|---|---|---|---|---|---|
| Առաջնակարգ Հարուստ. | 53 | 1 | 7/84 | 7 | 84 | 84×53= 4452 |
| Երկրորդակարգ Հարուստ. | 3'8 | 6 | 5/60 | 6×5= 30 | 30×1?= 360 | 360×53= 19,080 |
| Միջակ. Ապահով. | 3710 | 70 | 1 ռ. 63 կ. / 19 ռ. 56 կ. | 70×1 ռ. 63 կ. =114 ռ. 10 կ. | 114 ռ. 10 կ.× 12= 1369 ռ. 20 կ. | 1369 ռ. 20 կ. ×53= 72567 ռ. 60 կ. |
| Խակական Միջակ. | 2650 | 50 | 1/12 | 50 | 50×12= 600 ռ. | 600×53= 31,800 |
| Խակական Չքաւոր. | 1219 | 23 | Ձ ր ի | ա ր | ա ր: | |
| Գումար. | 7950 | 150 | » | 201 ռ. 10 կ. | 2413 ռ. 20 կ. | 127,899 ռ. 60 կ. |

Եւ արդ՝ որպէս երևի 'ի ցուցակէ 7950 տուն Հայ ազգաբնակութիւն Տփխիս քաղաքի 53 ծխական քահանայից իւրոց, առ իւրաքանչիւրն վճարէ 201 ռուբլի 10 կոպէկ ռոճիկ յամիան, իսկ 2413 ռուբլի 20 կ. 'ի տարին. որով, և չմնայ տեղի կասկածանաց, զի վիճակ քահանայից ապահովեալ պատկառելի գումարաւ ռոճկաց՝ զտեղի ներկայ քահանայիցս փոխարինեսցեն ևս քան զմեզ արժանաւորագոյնքն. որք և հետզհետէ բարձրացուսցեն զանկեալ վիճակ քահանայական կոչման։ Յիշեալ Ցուցակն ընդհանրապէս, և 'ի մասնաւորի վասն վարձատրութեան ծխականացն ըստ դասակարգի, եդեալ է աստ միայն իբրև զչափ փորձնական և ոչ իբրև զանշեղ կանոն. և կարէ ենթարկիլ յարմարագոյն փոփոխութեան։

## V. Գործունէութիւն Ատենի

---

### Յօդ. Ժ.

Ատեանն 'ի ժամանակին պարտի պահանջել 'ի քահանայից զհաւաքեալ տուրս ծխականաց, մուծանել զհաշիւ գումարացն ի սահմանեալ մատեանս, տալ քահանայից զանդորրատոմսն ի հասուցանել ծխականաց, բաժանել քահանայից զռոճիկս նոցա ի ժամանակին և զմնացորդ գումարն դնել 'ի գրամատունս ի շահեցողութիւն յընթացիկ հաշիւ։

## Յօդ. ԺԱ.

Ատեանն պարտի ազդարարել զանցառու տանն, որ դանդաղի ի վճարման կիսամեայ տրոցն ի ռոճիկ քահանայի. և եթէ ամիսք երկուք անցցեն ի վերայ և զանցառու տունն ոչ յօժարեսցի ի վճարումն տրոցն առանց յարգելի պատճառանաց՝ յայնդէպս Ատեանն ազդեսցէ տանն զանցառուի՝ ծխական քահանայիւն և երիւք ատենակալօք. և 'ի դէպս իսպառ հրաժարմանն 'ի տուչութենէ ծխական տրոցն՝ Ատենին միայ տնօրինել զարժանն. զի մի՛ գժտութիւն ինչ դիպեսցի 'ի մէջ ծխականացն նոյնպիսեաց և Ատենին։

## Յօդ. ԺԲ.

Եթէ մի ոք 'ի քահանայից ծուլասցի 'ի քահանայական պաշտամունսն և կամ յանձնարասցէ զսրբբազնագործութիւնն այլում քահանայի առանց յարգելի պատճառանաց՝ յայն դէպս Ատեանն ի բաց բարձցէ յամսական ռոճկաց նորին զվեց կոպէկս առ մի արծաթ և տնօրինեսցէ յօգուտ դանձարանին Որբոց և Այրեաց. և զպղերգ քահանայն խստագոյնս յանդիմանեսցէ ի ներկայութեան համայն կարգակցացն ի զգաստութիւն։

## Յօդ. ԺԳ.

Եթէ հիւանդանայցէ մի ոք 'ի քահանայից և կամ բացակայեսցէ 'ի պաշտօնատեղւոջէն կարգադրութեամբ Հոգևոր իշխանութեան՝ Ատեանն բարձցէ յամ-

սական ռոճկաց բացակայ կամ հիւանդ քահանային, զվեց կոպէկս առ մի արծաթ 'ի վարձ աշխատանաց 'ի տեղի նորա կարգեցեալ ժամանակաւոր քահանային։

### Յօդ. ԺԴ.

Զքանակ և զձև տուչութեան ռոճկաց սարկաւագաց, գպրաց և ժամկոչաց սահմանեսցէ և կարգաւորեսցէ Ատեանն ըստ իւրում բարեհայեցողութեան բարձրագոյն տնօրէնութեամբ Վեհափառ Հայրապետի Ազգիս 1)։

1) Ծանօթութիւն—Եթէ յաւելեալ տոկոսիք շահեցման գումարացն ռոճկաց քահանայից, որ 'ի դրամատունսն, բաւեսցին 'ի բաշխումն վերոյիշեալ պաշտօնէից իբրև 'ի ռոճիկ՝ յայն դէպս մարթէ 'ի յաւելեալ տոկոսեացն տալ. իսկ եթէ ոչ՝ յայնժամ յեկեղեցեաց քաղաքիս, ըստ սահմանադրութեան Ատենի. բայց զռոճիկ սարկաւագացն մարթ էր կազմել 'ի տոկոսեացն։

### Յօդ. ԺԵ.

Ի դէպս բարեփոխութեանց, վերաբերելոց կրօնական արտաքին ծխակատարութեանց, զորս կամիցի առնել Ատեանն և ոչ յիշատակին 'ի կանոնադրութեանս, յայնժամ պարտի հայցել առ այն զբարեհաճ տնօրէնութիւն Վեհափառ Հայրապետին Ազգիս 2)։

2) Ծանօթութիւն—Ցուցարկաւորութիւնք ննջեցելոցն բացաւ գլխով 'ի ցուրտ, 'ի տօթ

և յանձրևային եղանակի. 2) Սովորութիւն քառասնից պատարագաց յեօթնեակսն Յինանց. 3) Վարձաւոր պատարագք գրէթէ ամենօրեայք և պարբերականք. 4) Տնօրհնէքք երկօրեայք կամ եռօրեայք. որպէս պահանջեն Ծխականք և ոչ Ութօրեայք՝ 'ի ծննդեան Տեառն. 5) Մկրտութիւնն՝ յեկեղեցւոջն և ոչ 'ի տան. 'ի բաց առեալ զծանր հանգամանըս—զտկարութիւն մանկանն ասեմ, և այլ սոցին նմանք, որոց փոփոխութիւնն 'ի լաւն և 'ի պատշաճաւորն, չունի վնասել ողջամիտ վարդապետութեան եկեղեցւոյս Հայաստանեայց։

## VI. *Ժողովական գումարմունք.*

---

### Յօդ. ԺԶ.

Նիստք Ատենի կայացեն յԵրկամսեայ, յԱմսական և յԵրկնուագ գումարմունսն այսպէս—Երկամսեայ նիստք Ատենի կայացեն 'ի հետևեալ ամիսսն՝ 'ի Յունվարի, 'ի Մարտի, 'ի Մայիսի, 'ի Սեպտեմբերի և 'ի Նոյեմբերի. Ամսական նիստք՝ յամիսն մի նուագ. Երկնուագ նիստք յամսեանն Յունվարի և 'ի Մարտէ ցԱպրիլն յետ երկուց Տնօրհնեաց 'ի 20-ն ամսոյն։

### Յօդ. ԺԷ.

Երկամսեայ նիստք գումարին 'ի խորհրդակցութիւն ինչ ինչ բարեկարգութեանց և բարեփոխու-

*թեանց, վերաբերելոց Հոգևորականաց և կրօնական արտաքին սովորութեանց* [1].

1) Ծանօթութիւն—Ցայսոսիկ նիստսն գումարմանց Ատենակալք կարեն հրաւիրել 'ի խորհրդակցութիւն և զկողմնակի բանիբուն անձինս։

### Յօդ. ԺԸ.

*Ամսական նիստք գումարին 'ի 20-ն ամսոյն. ուր և հրաւիրին համօրէն քահանայք յստացումն ամսական ռոճկացն* [2].

2) Ծանօթութիւն — Բացակայ քահանայք գրաւոր յայտարարութեամբ զստացումն ռոճկացն կարեն յանձնարարել որոց և կամին։

### Յօդ. ԺԹ.

*Ցայսոսիկ նիստսն գումարմանց քննեսցին զանցառութիւնք քահանայից և որոշեսցին պատիժք կամ տուգանք ըստ տրամադրութեան կանոնադրութեանս։*

### Յօդ. Ի.

*Երկնուագ նիստք գումարին յետ երկուց եօթնեկաց Ծննդեան և Զատկական տնօրհնեաց. ուր Ատեանն ըստ մատենից ստասցի 'ի քահանայից զժողովեալ տուրս ժողովրդեան 'ի ռոճիկ քահանայից։*

## VII. Հաւաքումն ոսկւոյ.

### Յօդ. ԻԱ.

Հաւաքումն ոսկւոյ պարտի լինել ընդ ձեռն ծխական քահանայից երկու նուագ ի տարւոջն. այն է յաւուրս Ծննդեան և Զատկական տնօրհնեաց։

### Յօդ. ԻԲ.

Յաղագս հաւաքման ոսկւոյ՝ Ատեանն բաժանեսցէ քահանայից զթերթահամարեալ, ժապաւինեալ և կնքովն Ատենի կնքեալ Մատեանս. յորս ծխականք ստորագրեսցեն զտուրս իւրեանց և զազգանուանս։

### Յօդ. ԻԳ.

Յետ աւուրցն տնօրհնեաց ի սահմանեալ ժամանակին քահանայք ներկայասցեն յԱտեանն և զհաւաքեալ տուրս ժողովրդեանն յանձնեսցեն նմին։

### Յօդ. ԻԴ.

Ատեանն պարտի յանձնել իւրաքանչիւր քահանայի զանդորրատոմսս ի կտրոնացն Անդորրամատենի յաղագս ստացման ոսկւական տրոցն առ ի հասուցանել ժողովրդեան յապահովութիւն։

### Յօդ. ԻԵ.

Իւրաքանչիւր ծխական պարտի զվեցամսեատուրս ռոճկաց միանուագ վճարել. իսկ ցանկացողն զտարեկանն միանուագ վճարեսցէ։

## VIII. Գանձարան Ատենի.

---

### Յօդ. ԻԶ.

Գանձարան Ատենի գտանի ի Կոնսիստորիայի և կնքեսցի կնքօք Ատենի և Կոնսիստորիայի։

### Յօդ. ԻԷ.

Բացումն և փակումն արկեղ Ատենի պարտի լինել ի ներկայութեան երից Ատենակալաց, Քարտուղարի և Գանձապահի։

### Յօդ. ԻԸ.

Կնիք Ատենի գտանի առ գանձապահն և բանալի արկեղն պահպանի յարկեղ Կոնսիստորիայի։

## IX. Քարտուղար եւ Գանձապահ եւ Կնիք Ատենի.

---

### Յօդ. ԻԹ.

Քարտուղար Ատենի պարտի լինել հմուտ հայրենադէտ և ընտրի յԱտենէն։

### Յօդ. Լ.

Քարտուղարն պարտի ունել զմի ժապաւինեալ մատեան յաղագս սևագիր օրագրութեանց ժողովական գումարմանց. և զարձանագրական տպեալ թերթըս յաղագս արձանագրութեան մաքուր օրագրութեանց։

### Յօդ. ԼԱ.

Գանձապահ Ատենին պարտի լինել բարեհամբաւեալ ի հաւատարմութեան և հաշուապահական գիտութեամբ. և ընտրի յԱտենէն։

### Յօդ. ԼԲ.

Գանձապահն պարտի ունիլ զերկուս ժապաւինեալ մատեանս Մտից և Ելից. ի մատենի մտից ստորագրեսցեն Ատենակալք զստացմանէ ՚ի քահանայից, որոց ծխականաց և թէ որքան գումար գտանի ի շահեցողութեան. ի մատենի ելից ստորագրեսցին քահանայքն յաղագս ստացման ռոճկացն. Անդորրագրամատեանն նոյնպէս պարտի գտանիլ առ գանձապահն. յորում արմատքն մնասցեն և կտրոնքն յաղագս ստացման որոց ժողովրդեան, տացեն քահանայից ի յանձնումն ըստ պատկանելեաց։

### Յօդ. ԼԳ.

՚Ի վերջ իւրաքանչիւր ամսեան Մատեանք Ատենին ենթարկին վերստուգման և ստորագրական վաւերացման Ատենակալաց։

### Յօդ. ԼԴ.

՚Ի վարձ աշխատանաց Քարտուղարի և Գանձապահի սահմանի ռոճիկ ՚ի տոկոսեաց քահանայական ռոճկաց՝ զորոյ զքանակն որոշեսցէ Ատեանն։

### Յօդ. ԼԵ.

Ատեանն պարտի ունիլ զմի կնիք. ի մէջն՝ Խաչ, Սկիհ, Աւետարան և ի բոլորն այս շրջագիր «Կնիք Ծխական Հոգաբարձութեան». և տարեթիւ։

## X. Հաշուետուութիւն.

---

### Յօդ. ԼԶ.

Ի վերջ իւրաքանչիւր ամի Ատեանն պարտի պատրաստել զմանրամասն տեղեկագիր հաշուէտւութեան Արդեանց և Ծախուց, Արժէթղթոց և դումարաց Դրամատանց և օրագրական որոշմանց Ատենական գումարմանց և առանձին գրքուկիւ հրատարակել ի գիտութիւն ժողովրդեան 1)։

1) Ծանօթութիւն—Ցանկալի էր, ըստ հնարաւորութեան հանգամանաց ժամանակին, զի Ատեանն ինքնին հրատարակէր զթերթ ինչ «Ծխական Հոգաբարձութիւն» խորագրով. յորում երևելոց էին ամենայն գործունէութիւնք Ատենին։

| Էջեր. | Վրիպակ. | Ուղիղ. |
|---|---|---|
| 8 | միակողմանի և թոյլ— | միակողմանի և թոյլ. |
| » | օգուտը չէ մարմնացել, մի | օգուտը չէ մարմնացել մի |
| » | աննտախանձելի | աննախանձելի |
| 9 | Ուսումնարանների, | ուսումնարանի, |
| » | եթէ ա. որ հրտպարտկական | եթէ ա. հրապարակական |
| » | և բ. որ սորա մէջ | և բ. սորա մէջ |
| 16 | և իրաւունք է տտալիս | տալիս |
| 17 | հտչւով ու խելացի | հաչւով |
| 18 | պիտն սողայ | պիտի |
| » | ժամանտկը, երբ քտհանան | ժամանակը |
| 19 | հոգևորականաց նւիթտկան | նիւթական |
| 20 | գուցէ և աւելի լաւ և նրա- նից, | գուցէ և աւելի նրանից, |
| 27 | 'ի քահանտյութիւն՝ | 'ի քահանայութիւն՝ |
| 29 | սխիթալութիւնն | մխիթարութիւնն |
| 31 | կենքը առաջնորգողն | կետնքը |
| » | դիմումն անելով—ոչ | դիմումն անելով, ոչ |
| 33 | երբ պտհանջում իրան | պահանջում են |
| 34 | չռայլ, գեխ | գեղխ |
| » | կենքին | կեանքին |
| » | պարտաճտնաչ | պարտաճանաչ |
| 35 | մաոխարութիւնները, | մասխարութիւնները, |
| » | մկրտուած է կամիր | կարմիր |
| » | երաշխաորութիւնը | երաշխաւորութիւնը |
| 40 | խեղճ քարնան։ | քահանան։ |
| 41 | խիստ է և չափաղան. | չափազանց. |
| 43 | կտրևորութիւեանը՝ | կարևորութեանը՝ |
| » | ցաւ 'ի ոիրտ | 'ի սիրա |
| 47 | գրպարտութիւնք | գրպարտութիւնք |
| 49 | որոյ տեռչութիւնն է յան- ձնուած | տեսչութեանն |
| » | նկատմամբ. | նկատմամբ, |

| | | |
|---|---|---|
| 50 | մօտաւորելը— | մօտաւորելը, |
| » | պատճառաբանելով— | պատճառաբանելով՝ |
| » | միջոջններ | միջոցներ |
| 51 | պատկերներն | պատկերն |
| » | ինքը քահանայ չէ. | չէ, |
| 52 | տյսինքն | այսինքն |
| » | հոգևորակտիններից | հոգևորականներից |
| 54 | եզըկտցութիւնը | եզրակացութիւնը |
| 56 | առաջագրում | առաջադրում |
| 57 | Երերքտասաներորդ | Երեքտասաներորդ |
| 58 | Եւ այպէս | Եւ այսպէս |
| 61 | և Աշխտհագրութիւն. | Աշխարհագրութիւն. |
| 63 | Ձեռնտդրում | Ձեռնագրում |
| » | յարգտնաց. | յարգանաց. |
| 67 | կենսականից | կենսականից |
| » | ամբոջ | ամբողջ |
| » | կփոխէն | կփոխեն |
| 68 | տնիրտգործելու | անիրագործելի |
| 70 | Աղգիս կազսի | կազմի |
| 73 | հոգւսոյ ննջեցելոյն։ | հոգւոյ |
| 74 | 38 | 318 |
| » | գումալ. | գումար. |
| 75 | Փոփոխութեան։ | փոփոխութեան։ |
| 76 | ծիսական տըոցն՝ | ծխական |
| 77 | Հտյրապետի | Հայրապետի |
| 78 | գումարմունսն այսպէս— | գումարմունսն՝ այսպէս— |



